


## ԿՈՄՈՒՆԻԶՄ ԿԱՌՈՒՑՈՂՆԵՐԻ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

*Այս տարվա հունվարի 27-ին Կրեմլյան Մեծ պալատ էին հավաքվել մեր պարտիայի ընտրյալները՝ ՍՄԿՊ 21-րդ արտահերթ համագումարի պատգամավորները: Աշխարհի բոլոր ծայրերից եկել էին նաև եղբայրական կոմունիստական պարտիաների պատվիրակները: Եկել էին հեռավոր Ցեյլոնից ու Ալժիրից, Ինդոնեզիայից և Արգենտինայից, եկել էին Անգլիայից ու Ֆրանսիայից, Իտալիայից ու Դանիայից և էլի մոտ յոթանասուն երկրներից: Նրանք եկել էին մասնակցելու Սովետական Միության ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի քննարկմանը: Իսկ այդ կոնտրոլ թվերը սովորական թվեր չեն, դրանք մեր երկրում կոմունիզմի կառուցման համար մղվող համաժողովրդական պայքարի թվերն են:*

*Մեր երկիրը չտեսնված հաջողությունների է հասել պարտիայի 20-րդ համագումարից հետո, մենք շատ կողմերով անցել ենք կապիտալիստական առաջավոր երկրներից, իսկ տեխնիկայի ու գիտության գծով աշխարհում առաջին տեղն ենք գրավում: Առաջինը մե՛ր արհեստական արբանյակը սկսեց պտտվել աշխարհի շուրջը, առաջինը մե՛ր կոսմիկական հրթիռը թռավ դեպի լուսին և լուսնից անցնելով սկսեց պտտվել արեգակի շուրջը, որպես մի նոր մոլորակ:*

*Մեծ են մեր նվաճումները, բայց առաջիկա յոթնամյակում մեր նվաճումները կլինեն ավելի մեծ, ավելի հոյակապ: Մենք կանցնենք կապիտալիստական առաջավոր երկրներից բոլոր գծերով, մենք մեր երկրում պարտիայի իմաստուն ղեկավարությամբ կոմունիզմ կկառուցենք, և աշխատավոր մարդկանց լուսավոր երազները կիրականանան:*

№ 2 1959 թ.

ՓԵՏՐՎԱՐ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 30-ՐԴ ՏԱՐԻ




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

# ԹԵ ԻՆՉ ՊԱՏՄԵՑ 1965 ԹՎԱԿԱՆԻՑ ԵԿԱԾ ՏՂԱՆ

*ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

## ՄԵՐ ՈՒՂՂԱԹԻՌ-ԻՆՔՆԱԹԻՌԸ

Չէ, ի՞նչ եք ասում, սա իսկի էլ երազ չի, ոչ էլ հեքիաթ է։ Ա՛յ, երբ խոսքս ավարտեմ, ձեզ մի բան կասեմ, և դուք իսկույն ամեն ինչ կհասկանաք։

Մի երեկո Արամն իր մայրիկի հետ մեր տուն էր եկել։ Մինչ մեծերը զրուցում էին, ես Արամին տարա մեր նոր ուղղաթիռը ցույց տալու։ Հայրիկս հենց նոր էր վերադարձել Լուսավանից, որտեղ նա աշխատում է, և ուղղաթիռ-ինքնաթիռը այդպես էլ թողել էր բակում։ Ներս մտնելիս հայրիկն ինձ նույնիսկ զգուշացրեց.

— Լսի՛ր, Աշոտ, չլինի՞ հանկարծ օդ բարձրանաս, բենզին քիչ է մնացել, չես հասցնի վայրէջք կատարել։

Իզուր էլ նախազգուշացնում էր։ Ես, մինչույն է, օդ բարձրացողը չէի, չնայած, որ շատ էի սիրում ուղղաթիռով զբոսանքի գնալ։ Նախ՝ արդեն մութն էր, հետո էլ, ես դեռ այնքան լավ չէի վարում։ Իհարկե, ես արդեն մի քանի ինքնուրույն թռիչք կատարել էի, բայց հայրիկը թռիչքի ժամանակ միշտ ներկա էր լինում և ռադիոյով ներքևից ուղղում էր ինձ, երբ հանկարծ մի բան սխալ էի անում։ Բայց, սպասեցեք, դուք երևի մեր ուղղաթիռ-ինքնաթիռի մասին իսկի գաղափար էլ չունեք, գուցե և չգիտեք, թե դա ինչ բան է։ Այդ դեպքում ես ձեզ կբացատրեմ։ Դուք, իհարկե, մոտոցիկլետ տեսել եք և շատերդ էլ, նույնիսկ նստել։ Մեր ուղղաթիռ-ինքնաթիռը մոտոցիկլետի չափ բան է, և միայն մի հոգի կարող է նրանով վեր բարձրանալ, ավելի ճիշտ՝ մի մեծահասակ և մի երեխա։

Սկզբում հայրիկս, թռչելիս, ինձ էլ էր հետը վերցնում, բայց հիմա ես բավական մեծացել եմ և մենակ էլ կարող եմ օդ բարձրանալ։ Ճիշտ է, մեր ուղղաթիռը մոտոցիկլետի չափ է, բայց հայրիկն ասում է, թե մոտոցիկլետ վարելը շատ ավելի դժվար է։ Մեր քաղաքում անձնական ինքնաթիռ ունեցողներ շատ կան և հաճախ մրցություններ են կազմակերպվում։ Մի անգամ իմ հայրիկն էլ մասնակցեց մրցություններին և... սպասեցե՛ք, ես ախր ուրիշ բան էի ուզում պատմել։

Ուրեմն այսպես, Արամին ցույց տվեցի մեր ուղղաթիռն ու մենք շտապեցինք վեր, քանի որ ժամը վեցին Պրագայից հեռուստացույցով մանկական հաղորդում պետք է լիներ։ Հաղորդելու էին Պրագայի կենտրոնական տիկնիկային թատրոնի վերջին ներկայացումը։

Դեռ ներկայացումը չէր սկսվել, երբ ներս մտանք. շատ հաճելի երաժշտություն էին հաղորդում Մոսկվայից։ Վերջապես ներկայացումն սկսվեց։ Դա մի հեքիաթ-ներկայացում էր։ Տիկնիկները գեղեցիկ, գունավոր շորեր էին հագել, իսկ նրանցից մեկը, մի փոքրիկ, սպիտակազգեստ աղջիկ, նստել էր արծվի թևերին ու սավառնում էր կապույտ երկնքում։ Հիանալի բան է գունավոր հեռուստացույցը։ Մի տարի առաջ, երբ մենք դեռ գունավոր հեռուստացույց չունեինք, ներկայացումները այնքան գեղեցիկ չէին։




Կարտադրվի 86—91 միլիոն տոննա պողպատ։ Այդքան պողպատից կարելի է պատրաստել 112 միլիոն «Մոսկվիչ» ավտոմեքենա, որոնց մեջ հնարավոր է տեղավորել Չինաստանի ողջ բնակչությունը։

Մի ժամ հետո սկսվեցին մեծահասակների հաղորդումները։ Ես ու Արամը գնացինք իմ սենյակը, և դեռ չէինք մտածել, թե ինչ պիտի խաղանք միջանցքում, հնչեց հեռախոսի զանգը։

— Աշո՛տ, մի տես ո՞վ է,— ձայն տվեց մայրիկը։ Ես մոտեցա հեռախոսին և խոսափողը վերցրեցի թե չէ, հեռախոսի էկրանի վրա երևաց իմ մեծ եղբայրը՝ Վահանը, որ Մոսկվայում է աշխատում։ Ինձ տեսնելով հեռախոսի մոտ (չէ՞ որ նրանց տան հեռախոսի վրա էլ էկրան կար) նա շատ ուրախացավ։ Նախ հարցրեց, թե ինչպես եմ դասերս սովորում, հետո ասաց, որ մայրիկին կամ հայրիկին հեռախոսի մոտ կանչեմ։ Երբ իմացավ, որ նրանք ներկայացում են նայում, չթողեց, որ անհանգստացնեմ, ասաց հետո զանգ կտա։

Հետո մայրիկն ինքը զանգ տվեց։ Պիտի ասեմ, որ դա այնքան էլ դժվար բան չէ։ Վերցնում ես հեռախոսափողը և հավաքում Մոսկվայի ուզածդ համարը։ Իհարկե, առաջ հավաքում ես Մոսկվայի տառերը։

Եղբայրս ցանկանում էր, որ կիրակի օրը անցկացնենք Մոսկվայում։ Մայրիկը մի քիչ չեմ ու չում արեց, բայց հայրիկի հետ խորհրդակցելուց հետո, համաձայնվեց։

## ՎԱՅՐԷՋՔ ՄԱՆԵԺԻ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄ

Մյուս օրը շաբաթ էր, հայրիկը շուտ տուն եկավ։

Մենք առանց նաշելու գնացինք օդանավակայան և հենց օդանավում էլ նաշեցինք։ Ճաշելուց հետո ես ուզեցի մի քիչ պատուհանից նայել ներքևում փռված սպիտակ ամպերին, բայց արդեն ամպերից ցած էինք իջել և ռադիոյով հաղորդեցին, որ վայրէջք ենք կատարում Մոսկվայում։ Ափսո՛ս, ես ուզում էի դեռ մնալ օդանավում։ Չկարծեք, թե դա մի սովորական օդանավ էր։ Մեր օդային հսկան մոտ երկու հարյուր ուղևոր էր վերցնում և մի մեծ նավի էր նման։ Երբ հասանք Վնուկովոյի օդանավակայանը, դուռը բացվեց ու մենք մեր օդանավից ոչ թե իջանք ցած, այլ կարճ աստիճաններով մտանք մի ուրիշ տեղ, որը սկզբում ավտոբուսի էր նման, բայց երբ ներս մտանք, տեսանք, որ դա ավտոբուս չէ, այլ ուղղաթիռ։ Ուղղաթիռը նորից օդ բարձրացավ։ Մենք սլացանք դեպի Մոսկվայի կենտրոնը։ Քանի որ շատ բարձրից չէինք թռչում, լուսամուտից պարզ երևում էր Մոսկվան՝ բարձրաբերձ շենքերով ու գեղեցիկ աշտարակներով։ Մենք անցանք Լենինյան բլուրների վրայով, համալսարանի երկնասլաց շենքի մոտով, իսկ քիչ այն կողմ փայլփլում էր մի հսկայական սպիտակ սլաք։ Մենք անցանք այդ «սլաքի» մոտով, պարզվեց, որ դա երկրի առաջին արբանյակի հուշարձանն է։ Հայրիկն ասաց, որ մյուս օրը մենք զբոսանքի կգանք այդ հուշարձանի մոտ։



Քիչ հետո մենք վայրէջք կատարեցինք Մանեժի հրապարակում, Կրեմլի պարսպի մոտ։

Շատ լավ ժամանակ անցկացրեցինք Մոսկվայում։ Ճիշտ է, միայն մի օր մնացինք, բայց շատ բան տեսանք։ Օրվա մեծ մասը մենք անցկացրինք Գյուղատնտեսական ու Արդյունաբերական ցուցահանդեսում։

## ԳԻՏՈՒԹՅԱՆ ՏԱՂԱՎԱՐԸ

Եղբայրս ասաց, որ առաջին հերթին հարկավոր է այցելել ցուցահանդեսի գիտության տաղավարը։ Այնտեղ դրված էին արհեստական բոլոր արբանյակների և կոսմիկական նավերի մակետները։ Ամենից շատ մարդ կար լուսնի վերջին արհեստական արբանյակի մակետի մոտ։ Դա մի հսկայական կոն էր, որը հարթ ու ողորկ, փայլուն մակերես ուներ։ Ա՛յ, թե ինչպիսին էր այն փոքրիկ աստղը, որ ես լուսնյակ գիշերներին տեսնում էի լուսնի շուրջը արագ պտտվելիս։ Ներքևում առանձին-առանձին դրված էին այն բոլոր սարքավորումները, որ տեղավորված էին նրա մեջ։ Շատ հետաքրքիր էին նաև գիտության տաղավարի մյուս էքսպոնատները։ Ինչեր ասես, չեն հնարել մեր գիտնականները։ Դուք գիտեք, թե ինչպիսի դժվարությամբ են ածխահատները գետնի ընդերքից ածուխ հանում։ Իսկ հիմա գիտնականները հնարել են այնպիսի սարքավորում, որ ածուխի էներգիան գետնի տակ վերածում է գազի և խողովակով դուրս բերում՝ առանց որևէ դժվարության։ Իսկ գազը վերևում վառվում է ածուխից էլ ավելի լավ ու ավելի էլ մաքուր է։ Մենք տեսանք այդ սարքավորման մոդելը, որն իսկականից

աշխատում էր թափանցիկ պատի ետևում։

Հետո մենք տեսանք, թե ինչպես են արդյունաբերության մեջ օգտագործում երկրագնդի ընդերքի տաք ջրերն ու գոլորշիները։ Նույնիսկ ադի մեծ պաշարները ընդերքից դուրս են բերում ջրի միջոցով՝ ավելի հեշտ ու մատչելի եղանակով։

Գիտության տաղավարում մենք տեսանք նաև ատոմային ավտոմեքենայի ու շոգեքարշերի, նավերի ու օդանավերի մոդելներ։ Սովորական ավտոմեքենան, պարզվում է, միայն մի անգամ է լիցքավորվում և այնուհետև, մինչև իր շարքից դուրս գալը, քսան—քսանհինգ տարի աշխատում է առանց վառելիքի։ Մոսկվայում արդեն այդպիսի ավտոմեքենաներ կային, եղբայրս խոստացավ, որ դրսում ինձ ցույց կտա այդ մեքենաներից։

ՈՒրիշ շատ հետաքրքիր բաներ կային գիտության տաղավարում, բայց ռադիոյով հաղորդեցին, թե շուտով լուսնի շուրջը պտտվող արբանյակից հեռուստացույցային հաղորդում է լինելու։ Մենք արագ բարձրացանք երկրորդ հարկի դահլիճներից մեկը, որտեղ մի հսկայական հեռուստացույց կար։ Նրա էկրանը կինո—էկրանից մի քիչ էր փոքր և դեռ միայն կաթնագույն լույսով էր ողողված։ Նստեցինք փափուկ բազկաթոռներին։ Քիչ անց սկըսվեց հաղորդումը։ Ես մոտիկից, բոլորովին մոտիկից տեսա լուսինը։ Գիտե՞ք նա բոլորովին էլ նման չէ այստեղից երևացող լուսնին։ Մեծ էկրանի վրա մերթ երևում էին խորը, ճագարաձև ձորեր, մերթ բարձր լեռներ ու ժայռեր։ Պիտի խոստովանեմ, որ սկզբում չէի հասկանում, թե ինչ բաներ են այդ մեծ ու փոքր ճագարները, բայց եղբայրս ամեն ինչ բացատրում էր։ Բացի այդ՝ բացատրություն էր տալիս նաև մի մեծ գիտնական, որ անկյունում նստած էր միկրոֆոնի առջև։ Մի քանի րոպե չանցած, հանկարծ էկրանը մթնեց և ոչինչ չէր երևում։ Ծեր գիտնականն ասաց, որ արբանյակը անցնում է լուսնի չլուսավորված մասով։ Քիչ հետո նորից էկրանը լուսավորվեց և երևաց լուսնի զարմանալի մակերեսը։

Գիտության տաղավարից հետո մենք գնացինք արդյունաբերական ցուցահանդես, որ այնքան էլ հեռու չէր։

## ԶԱՐՄԱՆԱԼԻ ՄԵՔԵՆԱՆԵՐԸ

Ինչպիսի մեքենաներ ասես, որ չկային արդյունաբերական ցուցահանդեսում։ Եղբայրս հենց այստեղ էլ ցույց տվեց ատոմային ավտոմեքենան։ Դա մի շատ գեղեցիկ մեքենա էր, ձվաձև, թափանցիկ։ Ամեն ինչ ներսում երևում էր, և եթե այդպիսի մեքենայով մարդ նամփորդի, ամբողջ շրջապատը կտեսնի, որովհետև թափքն ամբողջովին թափանցիկ նեյլոնից է։ Արև ժամանակ վարորդը սեղմում է կոճակը և թափանցիկ նեյլոնն իսկույն մուգ գույն է ստանում։ Այդ ես իմ աչքով տեսա, որովհետև մեքենայի ներսում վարորդ կար նստած և նա այցելուներին բացատրություններ էր տալիս։ Եղբայրս ասաց, որ թափքի նեյլոնը երկու տակ է և ներսի բարակ աննկատելի շերտի մեջ ինչ-որ ծխանման մուգ գազ է լցվում։ Ուզած ժամանակ կարելի է այդ գազը դուրս մղել և էլի պատերը թափանցիկ կդառնան։ Կարելի է նաև մի պատը թափանցիկ թողնել, իսկ մյուսը մթնեցնել։

Հետո մենք տեսանք տրամվայի անաղմուկ վագոններ, որոնք գծերի վրայով այնպես են գնում, ինչպես հեծանիվը ասֆալտի վրա։ Ո՛չ մի ձայն, քաղաքում զարմանալի լռություն է տիրում,






ինչպես բաց դաշտում. միայն մարդկանց խոսակցությունն է լսվում։ Մենք եղանք նաև տնային գործածության առարկաների տաղավարում։

Մայրիկս հատկապես շատ հետաքրքրվեց լվացքի նոր տիպի մի մեքենայով, որը ոչ միայն հագուստը լվանում է, այլև չորացնում և հարթուկում։ Այդտեղ կային նաև աման լվացող մեքենաներ, փոքրիկ խոհանոցներ, որոնք ճաշը եփում էին առանց խոհարարի միջամտության։ Տանտիրուհին մոտենում ու կոճակների միջոցով պատվիրում է—առաջինը՝ կարտոֆիլով սուպ, երկրորդը՝ տոլմա, երրորդը՝ կիսել և այլն։ Պատվիրում ու գնում է իր բանին։

Երբ ճաշերը պատրաստվում են, խոհարար-խոհանոցը զանգ է տալիս. այսինքն եկեք ձեր ճաշն ստացեք։ Լավ է չէ՞։ Մայրիկն իսկույն պատվիրեց, որ այդպիսի մի մեքենա առնեն մեզ համար։



Նկ. Ն. ՔՈԹԱՆՋՅԱՆԻ

## ՈՐՏԵ՞Ղ Է ՏՐԱԿՏՈՐԻՍՏԸ

Արդյունաբերական ցուցահանդեսից հետո մենք շրջեցինք գյուղատնտեսական ցուցահանդեսի տաղավարները։ Շատ հետաքրքիր բաներ տեսանք տաղավարներում, բայց ամենից հետաքրքիրն սկսվեց, երբ մենք Ուկրաինայի տաղավարի կողքից անցնելով, մտանք ցուցահանդեսի փորձադաշտերը։ Այստեղ ամեն տեսակի բույսեր կային, ամեն տեսակի պտղատու ծառեր, նույնիսկ խաղողի այգիներ։ Իսկ մի բաց դաշտում երկու տրակտոր էին աշխատում։ Սկզբում դրանք շատ սովորական տրակտորներ թվացին, ես նույնիսկ առաջ ընկա, որ շուտ հասնենք դիմացի արտը, որի վրա, չգիտես ինչու, պարզ եղանակին ամպի մշուշ էր իջել։ Բայց եղբայրս թևիցս բռնեց և ասաց, որ մի քիչ սպասեմ։ Տրակտորներից մեկը առանց աղմուկի մոտենում էր մեզ։ Դա նույնիսկ մի տեսակ տարօրինակ թվաց. դե էլ ի՞նչ տրակտոր, որ չաղմկի։ Բայց հրաշքը հետո կատարվեց։ Երբ տրակտորը հավասարվեց մեզ, ես քիչ մնաց ճչայի։ Պատկերացնու՞մ եք. տրակտորն առանց վարորդի էր շարժվում։

— Ո՞րտեղ է տրակտորիստը,— զարմացած հարցրեցի ես։

Եղբայրս ժպտալով բացատրեց, որ հիմա այդպիսի տրակտորներ են արտադրվում տափաստանային և հարթ շրջանների համար։ Էլ ի՞նչ տրակտորիստ, երբ խելոք մեքենան ինքն է գնում ուղիղ ակոսի միջով և թեքվում է, որտեղ որ պետք է։

Հիմա արդեն բոլորը առաջ էին գնացել և մենակ ես էի մնացել կանգնած կիսավար արտի մոտ և աչք չէի կտրում խելացի տրակտորներից։

Իսկ երբ մոտեցանք տարօրինակ ծխով պատած արտին, ես ավելի զարմացա։ Այնտեղ մի ուրիշ հրաշք էր կատարվում։ Շուրջը արև էր ու պարզ եղանակ, բայց այդ արտի վրա անձրև էր գալիս։ Արհեստական անձրև։ Պարզվեց, որ հիմա ցուցահանդեսի փորձադաշտերը այդպես են ջրում։ Հատուկ սարքավորման միջոցով ամբողջ արտի վրա անձրևաբեր ամպեր են ստեղծում, որն անձրև դառնալով իջնում է հողի վրա։

Շատ բան տեսանք ցուցահանդեսում և հոգնած վերադարձանք տուն։ Չնայած դրան, երեկոյան կինո գնացինք։

Դե Երևանում էլ կինո-պանորամա կար և ես այնտեղ արդեն եղել էի։ Նստում ես դահլիճում և էկրանը ոչ միայն դիմացդ է, այլ աջ ու ձախ կողմերում։ Մեքենան գնում է, դու էլ հետը։ Իսկ Մոսկվայինն այդպես չէր։ Էկրանը կլոր էր, բոլորովին կլոր և դու քո բազկաթոռի հետ կարող ես շուռ գալ որ կողմ ուզես։

Ահա դու ընկել ես հեռավոր հյուսիս։ Այնտեղի բնակիչները տաք մուշտակներ են հագել, ցուրտ է, սառնամանիք, ու դու էլ նրանց հետ մրսում ես, մի տեսակ դող է անցնում քո վրայով։ Իսկ երբ հնոց է երևում, նրա տաք շունչը կպչում է նաև քո դեմքին։

Հայրիկն ասաց, որ շուտով Երևանում էլ է կինո-ցիկլորամա լինելու։

Ես արդեն երկարացրեցի։ Մնացածն էլ հետո կպատմեմ։ Միայն ավելացնեմ, որ թեև մենք մի կիրակի օր ունեինք, բայց երկու գիշեր մնացինք Մոսկվայում։ Երկուշաբթի առավոտ վաղ ճանապարհվեցինք և ոչ հայրիկը աշխատանքից ուշացավ, ոչ էլ ես՝ դպրոցից։

Ինչպես տեսնում եմ, դուք թերահավատ եք։ Ձեզ թվում է, թե իմ պատմածը խելքի մոտ բան չէ, Բայց, ազնիվ խոսք, այս բոլորը զուտ ճշմարտություն է։ Միայն ինչպես խոստացա սկզբում, ասեմ, որ ես ձեզ հյուր եմ եկել 1965 թվականից։



Յոթնամյակի վերջին տարում մեր էլեկտրակայանները կտան 230 անգամ ավելի շատ էլեկտրաէներգիա, քան արտադրվում էր ցարական Ռուսաստանում 1913 թվականին։

# ԱՇԽԱՏԵԼ, ՍՈՎՈՐԵԼ ԵՎ ԱՊՐԵԼ ԼԵՆԻՆԱԲԱՐ

*(Ակնարկ)*

Գ. ԲԱՆԴՈՒՐՅԱՆ

Աղմկում են հաստոցները։ Օդում, երկաթյա որսը ճանկեքում, սավառնում է շարժական կամրջային կռունկը։

Գործարանն իր միալար ու չդադարող ժխորով ասես ժրաջան մեղուներով լի փեթակ լինի։ Բայց ոչ, այդ ժխորը նաև երաժշտության է նման։ Թվում է հաստոցները դաշնամուրներ են և նրանց առջև կանգնած բանվորները՝ դաշնակահարներ, որ նվագում են՝ իրենց սեփական երաժշտությամբ տարված։ Մերթ ընդ մերթ հնչում է նրանց կարճ, բայց բովանդակալից խոսակցությունը, որ ձուլվելով այդ երաժշտությանը, դառնում է մի հերոսական երգ՝ մեր ժողովրդի, նրա ստեղծագործ ներկայի և լուսավոր ապագայի մասին։

Մենք գործարանի իններորդ ցեխի ռոտորների հավաքման տեղամասում ենք։ Իսկ դուք գիտե՞ք, թե ինչ բան է ռոտորը. դա էլեկտրական հոսանքի աղբյուր գեներատորի մեջ պտտվող այն կոճն է, որը իր շուրջը մագնիսական դաշտ է առաջացնում։ Եվ ահա մեր դեմ շարժվում է տրակտորի թրթուրներն հիշեցնող մետաղյա ժապավենը՝ կոնվեյերը, ուր իրարից որոշ հեռավորության վրա դրված է յոթ ռոտոր։ Յուրաքանչյուր ռոտորի դիմաց կանգնած է մի երիտասարդ բանվոր։ Նրանցից ամեն մեկը ռոտորի վրա ավելացնում է մի մաս, որից հետո արդեն պատրաստ ռոտորը հանձնվում է հաջորդ բրիգադին։

Կենտրոնում աշխատողը բրիգադիրն է, որը կարծես կատարում է կչռույթի լծակի դերը՝ հավասարակշռելով բրիգադի աշխատանքը։ Նրա ձեռքերն աշխատում են անտեսանելի արագությամբ։ Նա մերթ աջ է նայում, մերթ ձախ, որպեսզի հարկ եղած դեպքում օգնի ընկերներին, չէ՞ որ, թեև երիտասարդ, բայց արդեն հմուտ մասնագետ է։ Նա դեռ մանկուց սիրում էր իր մասնագիտությունը։ Այդ սերը նրան բերեց արհեստագործական դպրոց, որն ավարտելուց հետո անմիջապես ընդունվեց գործարան։ Հետո գնաց բանակ, բայց զորացրվելուց հետո կրկին վերադարձավ գործարան, իր նախկին ցեխը, ուր և աշխատում է մինչև օրս։ Իսկ թե ինչպես է նա աշխատում իր բրիգադի հետ միասին, այդ մասին մեզ պատմում է նրանց գլխավերևում, սյունին ամրացրած ցուցանակը։ Ահա թե ինչ է գրված այնտեղ. «Այստեղ աշխատում է EC տիպի գեներատորների ռոտոր հավաքողների կոմունիստական աշխատանքի

բրիգադը...» Այնուհետև գրված են բրիգադիր Միլիջան Գրիգորյանի և բրիգադի մյուս անդամների անունները:

Կոմունիստական աշխատանքի բրիգադները այդ պատվավոր կոչմանը արժանանում են համբերատար ու համառ աշխատանքի շնորհիվ: Նրանք ձգտում են օր օրի ավելացնել աշխատանքի արտադրողականությունը, ձեռք բերած գիտելիքները, օգնել ետ մնացողներին և աշխատանքում ու կենցաղում լինել օրինակելի: Իսկ այդպիսի բրիգադներ արդեն գործարանում շատ կան և նրանց թիվը օրեցօր աճում է:

Ահա և Վիկտոր Թադևոսյանի բրիգադը: Կանոնավոր շարքերով շարվել են մարդու հասակի չափ բարձր տրանսֆորմատորները, որտեղ աշխատում են էլեկտրամոնտաժողները, մեկը չոքած գետնին, մյուսը՝ կռացած, երրորդը՝ կանգնած: Ո՞րն է նրանցից բրիգադիրը, դժվար է ջոկել: Բոլորն էլ հավասարապես տիրապետում են գործին և մեկը մեկից ավելի լարված ու եռանդով է աշխատում:



— Վիկտո՛ր,— հարևան բրիգադից ձայնում է մեկը և մոտենում տրանսֆորմատորին կռացած միջահասակ, նիհար, բայց սև ու վառվռուն աչքերով երիտասարդին:

— Ի՞նչ կա,— հարցնում է Վիկտորը՝ գործը թողնելով:

— Ինչի՞ց է, որ տրանսֆորմատորը լավ չի նստում սահուղու վրա, անցքերը չեն համընկնում...:

Վիկտորը չոքում է մետաղե սահուղուն և ձեռքերի շարժումներով ու խոսքերով բացատրում պատճառը: Ահա թե ինչպիսին է նա:

Բայց բրիգադի մյուս անդամներն էլ պակասը չեն, Լևոն Աղբալյանը Վիկտորի հետ միասին սովորում է գործարանին կից էլեկտրամեխանիկական տեխնիկումի չորրորդ կուրսում: Բրիգադի անդամներից մեկը պարտիական է, մնացած չորսը կոմերիտական: Բոլորն էլ օրվա առաջադրանքները կատարում են երեք հարյուրից երեք հարյուր հիսուն տոկոսով: Նրանք այսօր արդեն վեց հատ տրանսֆորմատոր են հանձնել փորձնական բրիգադին, դա կազմում է երկու հարյուր հիսուն տոկոս, իսկ ժամը դեռ երկուսն է ընդամենը: Բայց նրանք լավ աշխատելու հետ մեկտեղ գիտեն և լավ հանգստանալ: Եթե մի քիչ շուտ, ընդմիջումին գայինք՝ նրանց կհանդիպեինք ցեխի ակումբում շախմատ խաղալիս կամ պարելիս: Եվ ոչ միայն այստեղ, նրանք տանն էլ գրեթե միշտ միասին են: Այ, հենց այսօր նրանք աշխատանքից հետո գնալու են թատրոն: Հաճելի է, երբ ներկայացման ընդմիջումներին կամ ներկայացումից հետո տուն վերադառնալիս՝ նրանք կարծիքներ են փոխանակում, հաճախ վիճում այս կամ այն հարցի շուրջը և, ինչպես ասում են, սրտները դատարկում, թեթևանում հոգով: Հենց այդ ընկերական սերտ կապն է նրանց այդքան մտերմացրել, միաձուլել ու դարձրել մի ընտանիք: Ահա թե ինչու գործարանում ամենից առաջ իրենց բրիգադն է արժանացել կոմունիստական աշխատանքի բրիգադի բարձր կոչմանը և վստահություն ներշնչել սոցիալիստական մրցության հրավիրելու Մոսկվայի Իլյիչի անվան գործարանի Անդրեյ Սենինի ղեկավարած բրիգադին: Գործարանի «Էլեկտրամեքենաշինարար» բազմատիրաժ թերթում հրապարակված է Վիկտորի բրիգադի մոսկվացիներին ուղղված բաց նամակը «Աշխատել, սովորել և ապրել լենինաբար» վերնագրով, որի մեջ դուք կհանդիպեք հայրենասիրությամբ լեցուն այսպիսի շատ տողերի.

«Մեր բրիգադը որոշել է աշխատել կոմունիստաբար, ողջ ընդունակությունները նվիրել կոմունիստական հասարակարգի կառուցման մեծ գործին...»:

Մենք դուրս ենք գալիս Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանից՝ լցված խոր հավատով մեր լավ ապագայի նկատմամբ, և մեր սրտում հնչում են Մայակովսկու կրակոտ ու իմաստուն խոսքերը.

Ես գիտեմ՝
կլինի
Այստեղ քաղաք,
Ես գիտեմ
Կծաղկի այգին,
Քանի որ
Երկրում
Սովետական—
կան
Այսպիսի
Մարդիկ:

# Մեր գործերի պտուղները

Լ. ԱՍՄԱՐՅԱՆ

Սուրիկը ապրում է Կիրովականում: Նա եկել է Երևան, մորաքրոջ տունը: Ձմեռ է, բայց այնքան հաճելի ջերմություն կա սենյակում: Նա մտնում է մյուս սենյակները, բոլոր տեղերում էլ տաք է, մաքուր: Խոհանոցում եփվում է ճաշը, բայց ո՛չ ծուխ կա, ոչ էլ մուր:

Սուրիկը հարցնում է.

— Մորաքույր, ի՞նչ եք վառում, որ և՛ տաք է, և՛ հաճելի, և՛ մաքուր:

— Սա, սիրելիս, գազ է, որը նորություն է մեր քաղաքում: Հեռավոր Ղարադաղից ձգվում է հսկա գազամուղը, ջերմություն է տալիս բնակարաններին և աշխատեցնում գործարանները: Գազը փոխարինում է քարածխին, նավթին: Հեռավոր Դոնբասից և այլ վայրերից քարածուխ բերելն ավելի թանկ է նստում, և վառելուց հետո մուր է լինում:

Հետո մորաքույրն ասաց, որ շուտով Կիրովականում էլ գազ կլինի: Սուրիկը շատ ուրախացավ դրա համար: Մյուս օրը նա խանութներից մեկի ցուցափեղկում հրաշալի պայուսակներ տեսավ:

— Մորաքույր, տե՛ս, ինչ լավն են, իսկական կաշվից են, չէ՞:

Մորաքույրը պայուսակը տընտղեց և ասաց.

— Ո՛չ, բալիկ ջան, բնական կաշվից չէ, արհեստական է, բայց այնքան նուրբ է պատրաստված այդ նյութը, որ թըվում է, թե իսկական կաշվից է: Սա պատրաստված է քիմիական պոլիքլորվինիլային խեժից:

Եվ Սուրիկը հիշեց, թե ինչպես էր դպրոցում քիմիայի ուսուցիչը պատմում քիմիական նյութերից ստացված իրերի մասին: Ինչքա՜ն նյութեր են ստացվում միայն պոլիքլորվինիլային խեժից՝ կոշիկի ներբան, զանազան սփռոցներ, թիկնոցներ, լինոլեում, գալանտերեական ապրանքներ, սանտեխնիկական սարքավորում, թթվադիմացկուն խողովակներ, շինարարական նյութեր: Խեժը չի վախենում կրակից և ջրից: Դրա համար էլ էլեկտրալարի արտադրության մեջ օգտագործվում է որպես մեկուսիչ նյութ:

Հայաստանը զարգացած քիմիայի երկիր է: Յոթը տարում քիմիական արդյունաբերությունը կաճի մի քանի անգամ, կհզորանա: Եղած գործարանները կընդլայնվեն, նոր սարքավորում կստանան և կարտադրեն նորանոր նյութեր, որոնք կծառայեն ժողովրդին, նրա կյանքը կլավացնեն:






Մսի, յուղի, շաքարի արտադրությամբ մեր երկիրը վաղուց անցած կլինի Ամերիկայի Միացյալ Նահանգներից:

Մի՞թե այդպիսի բարիքներ չեն արտադրելու Կիրովականի ացետատային մետաքսի, Ախտայի կապրոնի-կորդի գործարանները, որոնք աշխատելու են այդ տարիներին:

— Սուրիկ, քեզ համար գուլպա եմ գնել,— մի օր կասի նրա հայրիկը տուն գալով: Սուրիկը ուրախ-ուրախ կվերցնի գուլպան և կհպարտանա, թե Հայաստանը վերջին յոթ տարվա ընթացքում ինչքա՜ն արհեստական մետաքս է արտադրում, և ինչ նուրբ

որակ ունի արհեստական մե-տաքսը, որը ոչնչով չի զիջում իսկականին: Հայաստանում ա-ցետատային մետաքսի արտա-դրությամբ նոր թափ կստանան մետաքսագործությունը, կարի ու տրիկոտաժեղենի արտադրան-քը:

* * *

Հրաշալի բյուրեղապակե ա-մանները, տարբեր չափերի ու ձևերի, շողշողում են էլեկտրա-կան լույսի տակ:

Կավահողի հետ միասին ըս-տացված ցեմենտը, պոտաշը և այլ նյութեր հնարավորություն կստեղծեն լայնացնելու բետոնի և երկաթբետոնե կառուցվածք-ների թողարկումը:

* * *

Ո՞վ չգիտի, որ Ալավերդում, բնության հրաշալի այդ անկյու-նում, որտեղ ձգվում են լեռնա-շարքերը, գործարանային ծխնե-լույզներ են բարձրանում:

պղնձի, մոլիբդենի և այլ մե-տաղների մեծ պաշարները:

Բայց ինչքա՜ն հազվագյուտ մետաղներ էլ կան թաքնված հայրենի երկրի ընդերքում: Դրանք էլ պետք է պեղվեն և լույս աշխարհ հանվեն. չէ՞ որ այդ մետաղները շատ կարևոր են ռադիոտեխնիկայի, հեռուս-տատեսության, կիսահաղորդիչ-ների, տելեմեխանիկայի և այլ ճյուղերի զարգացման համար:

Հայաստանը այդ կարևոր



Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Ոչ ոք էլ չի զարմանա, եթե տանը տեսնի այդպիսի ծաղկա-ման: Իսկ Սուրիկն ինչի՞ պետք է զարմանա:

Բայց ոչ: Նա զարմանալու իրավունք ունի:

— Հայաստանի արտադրանք է և բարձր տեսակի,— բացատրը-րում է հայրը:

Տեղական բյուրեղապակին և ոչ միայն բյուրեղապակին, այլև թափանցիկ ապակին, ջնա-րակած ապակին և այլ ապրանք-ներ շատ կտարածվեն մեզանում:

Ախտալայի շրջանում մի հսկա կոմբինատ է կառուցվելու նե-ֆելինային սիենիտների հանքը մշակելու համար: Դրանից կը-պատրաստվեն հենց բյուրեղա-պակին ու թափանցիկ ապակին: Այդ կոմբինատը առատ հումք կտա ալյումինի արդյունաբերու-թյանը:

Պղնձաձուլական գործարանը մը-շակում է լեռների ընդերքում թաքնված հումքը՝ արնձաքարը...

Սուրիկն անցյալ ամառ գնացել էր Ալավերդի. Նա հորեղբոր հետ միասին եղավ գործարանում ու տեսավ, թե ինչպես հսկա հա-լոցքի առջև կանգնած, պղինձ են ստանում աշխատանքի հերոս-ները... Բայց Սուրիկը գիտի, որ ոչ միայն Ալավերդում, այլև Զանգեզուրում գունավոր մե-տաղների պաշարներ կան:

1959—1965 թվականներին կը-զարգանա Հայաստանի գունավոր մետաղագործությունը և լեռնա-հանքային արդյունաբերությու-նը: Յոթ տարում դրանց արտա-դրանքը կավելանա երեք ան-գամ, որի համար մեծ հնարա-վորություն են ստեղծում մեր լեռների ընդերքում թաքնված

ճյուղերը անպայման կզարգաց-նի:

* * *

Մի քանի տարի առաջ էր, երբ հիմնադրվեց Լուսավան քաղա-քը:

Այստեղ նոր է ամեն ինչ, նոր են տները: Նոր են մարդիկ, նը-րանք եկել են կառուցելու այս փոքրիկ քաղաքը: Դեռ երեկ էր, երբ այստեղ հասավ առաջին գնացքը: Իսկ վա՞ղը... Կանցնի յոթ տարին, և նորանոր գործա-րաններ նոր կյանքով կլցնեն Լուսավանը: Տասնյակ հազարա-վոր նոր բանվորներ ներս կը-մըտնեն գործարանների լույս դարբասներից: Մեր խիտ բնա-կեցված ռեսպուբլիկայի համար շատ կարևոր է այդպիսի գոր-ծարանների կառուցումը: Չէ՞ որ այնտեղ շատ մարդիկ կաշ-




1959 թվականի դեկտեմբերի 29-ին մեր ռեսպուբլիկան պարգևատրվեց

ԼԵՆԻՆԻ ՇՔԱՆՇԱՆՈՎ:

Հայաստանի աշխատավորությունը կառավարական այդ բարձր պարգևին արժանացավ գյուղատնտեսության բնագավառում ձեռք բերած վիթխարի նվաճումների համար:

խատեն: Այն սերունդը, որ այժմ նստած է դպրոցական նստարանին, ութնամյա դպրոցն ավարտելուց հետո կարող է և՛ աշխատել, և՛ սովորել:

— Մի՞թե միայն Լուսավանում են այդպիսի գործարաններ լինելու,— հարցնում է անհամբեր Սուրիկը հայրիկին:

— Ինչո՞ւ միայն Լուսավանում: Ախտայի շրջանում մի նոր քաղաք է կառուցվելու իր տասը ձեռնարկություններով: Սարքաշինական-հաստոցաշինական գործարաններ են կառուցվելու նաև մեր ռեսպուբլիկայի այլ վայրերում: Յոթ անգամ կավելանա մետաղահատ հաստոցների արտադրությունը: Նույնքան էլ կավելանա մեքենաշինությունը: Ինչե՛ր ասես, որ չեն արտադրվելու մեր ռեսպուբլիկայում: Մետաղահատ հաստոցներ, հավաքող կոնվեյերներ, կոմպրեսորներ, կենտրոնախույս պոմպեր, բարձրացնող մեխանիզմներ, քար մշակող մեքենաներ և այլն:

* * *

Դարեր շարունակ ծփում էր կապույտ Սևանը, և նրա ջրերը հոսում էին, հոսում Հրազդանով և անօգուտ կորչում: Շուրջը խավար էր տիրում, իսկ ջուրը դաշտերին չէր հասնում:

Սովետական մարդիկ որոշեցին նոր կյանք տալ ջրերին: Թնդացին մուրճի ու քլունգի ձայները, օր ու գիշեր կառուցեցին բանվորները, կառուցեցին Երգէսը, Քանաքեռգէսը, Գյումուշգէսը... Նրանք լույս են տալիս մեր շքեղ մայրաքաղաքին, գյուղերին, ծաղկի նման բացվում են ամեն տան մեջ:

Հայաստանն այժմ միքանի անգամ ավելի շատ էլեկտրաէներգիա է տալիս, քան Թուրքիան:

Բայց դա էլ քիչ է: Կյանքն առաջ է գնում, մարդկանց պահանջները մեծանում են: Իսկ որպեսզի դրանք բավարարվեն, պետք է է՛լ ավելի արագ թափով առաջ տանել արդյունաբերությունը: Իսկ արդյունաբերությունը առանց էլեկտրաէներգիայի չի կարող գոյություն ունենալ: Ահա թե ինչու Կոմունիստական պարտիան գտավ, որ առաջիկա յոթնամյակում միայն Հայաստանի էներգետիկան 1,8 անգամ պետք է ավելանա: Կանցնի մի կարճ ժամանակ և էլեկտրաէներգիան նոր երգով կլցնի սարերն ու ձորերը: Շարք կմտնեն Աթարբեկյանի և Երևանի նոր հիդրոկայանները, Սևան—Հրազդան կասկադի նոր կառուցները, Որոտանի կասկադից Տաթևի ամենահզոր հիդրոկայանը, բնական գազի միջոցով կսկսեն գործել Երևանի և Ախտայի ջերմաէլեկտրակայանները: Դրանք նոր էներգիա կտան մեր ռեսպուբլիկային:

Ավտոմեքենան սլանում է երբեմնի ամայի վայրերով և... ինչ է տեսնում Սուրիկը՝ մոտիկ




Հացահատիկի համախառն բերքը կըկազմի 10—11 միլիարդ փութ: Յուրաքանչյուր մարդուն կընկնի չորս անգամ շատ հաց, քան պետք է: Վերջին տարիներին յուրացված խոպաններում կարելի է տեղավորել Բելգիայի նման 12 պետություն:

ապագայի քիմփորդը: Կենարար ջուրը շունչ է հաղորդել երկրի հողին ու քարին, կանաչի մեջ ծփում է շրջապատը: Շարքշարք ծգվել են նորատունկ ծառերը... Բուրում է դեղձենին և անմահական հոտով լցնում ամենուր, իսկ խաղողի վազը հրնվանքից արտասվում է...

Արզնի—Շամիրամի, Թալինի, Կոտայքի, Դվինի ջրանցքները մարդկանց երազներին կյանք կտան: Արարատյան դաշտի աղակալած հողերը կծաղկեն, լեռ-

նային բարձունքում արևի տակ կհասունանան խաղողի ողկույզները։ Դրանք կդառնան գինի, կոնյակ, որոնց համբավը վաղուց է դուրս եկել Հայաստանի և Սովետական Միության սահմաններից։ Իսկ միսը, կաթը... ինչքա՜ն առատ կլինեն։

* * *

Առավոտ էր։ Արևի շողերն ընկել էին սենյակը և անդրադարձել պատերին։ Սուրիկը շրջում էր մորաքրոջ նոր բնակարանում ու ասում.

— Ջէ՛, այս տունն ավելի հարմարավետ է...

Այլ կերպ էլ չէր կարող լինել. չէ՞ որ սա վերջերս է կառուցվել շինարարական նորագույն տեխնիկայով, օգտագործվել են նոր շինանյութեր, որոնք օգնել են կառուցելու արագ, էժան և հարմարավետ։

Բնակարանային շինարարության վրա երեք միլիարդ ռուբլի է ծախսվելու՝ 7 տարվա մեկ միլիարդի դիմաց։ Նոր ավաններ, նոր գյուղեր են կառուցվելու։ Յոթնամյակում վեր կխոյանան նոր շենքեր, կբացվեն նոր փողոցներ, կգցվեն նոր պուրակներ ու ծառուղիներ, իսկ ինչքա՜ն նոր դպրոց, մանկապարտեզ ու մանկամսուր, ինչքա՜ն կուլտուրայի օջախներ են հիմնվելու. բոլորը թվարկել անհնարին է։ Այդ բոլորը արվում է մեր մարդկանց կյանքը բարելավելու, նրանց առավել երջանիկ դարձնելու համար։






Պ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

Երեկո էր։ Սեղանի փոքրիկ լամպը սենյակը լուսավորել էր կաթնագույն, աղոտ լույսով։ Սովորականի նման բոլորը հավաքվել էին հեռուստացույցի դիմաց և կինոնկար էին դիտում։ Բացակայում էր միայն հայրիկը։ Նա քիչ առաջ նորից գործարան էր գնացել. ժողով ուներին։ Կինոնկար նայելու համար էին եկել մորաքույր Գայանեն ու Շուշան տատը։ Մայրիկն ուզեց բալլի մուրաբայով թեյ տալ հյուրերին և միացրեց էլեկտրական թեյնիկը։ Հանկարծ կայծեր դուրս թռան շտեպսելից, լսվեց ինչ-որ ճարճատյուն, և անմիջապես հանգավ սեղանի լամպը։ Հանգավ ու լռեց նաև հեռուստացույցը։

— Վա՜յ,—գրեթե միաժամանակ ափսոսանքի ու զարմանքի ճիչ արձակեցին բոլորը։

— Է՜հ, ինչ արիր,—դժգոհեց Գևորգը,—էլի կարճ միացում տվեցիր ու վառեցիր ապահովիչը։ Հիմա ի՞նչ անենք էս մթանը։

— Ինչ անեմ, դիտմամբ չարի, մոմ կվառենք, մինչև Վազգենը գա,—կարծես արդարանալու համար ասաց մայրիկը և միացնող լարը անջատեց։ Ապա զգույշ քայլերով մոտեցավ պահարանին, վերցրեց մոմը, վառեց և մոմակալով դրեց սեղանին։

— Վազգենն ո՞վ է,—հետաքրքրվեց մորաքույրը,—երևի մոնտյոր է, հա՞։

— Չէ, ի՞նչ մոնտյոր,—պատասխանեց Գևորգի մայրիկը՝ տիկին Վարդուհին,—մեր հարևանի տղան է։ Նա որ չլինի՝ մենք կորած ենք։ Լույսը հանգչում է՝ նրան ենք կանչում, մի բան մեխելու լինենք՝ էլի նրան ենք կանչում։ Ոսկի ձեռքեր ունի։

Լսելով այս խոսքերը, Գևորգը մռայլվեց և կախեց գլուխը։ Նա գիտեր, որ մայրիկը Վազգենին գովելով չէր բավարարվի. հիմա կսկսեր ամոթանք տալ իրեն։ Բայց նրա բախտից մայրիկն այլևս այդ մասին չխոսեց։

Վազգենը Գևորգի հասակակիցն էր։ Մեկ տարի առաջ ավարտելով յոթնօրյա դասարանը, նա աշխատանքի էր ընդունվել մեքենաշինական գործարանում և տեղափոխվել էր բանվորական դպրոց։ Առաջ Գևորգն ու Վազգենը մոտ ընկերներ էին, բայց հետո կամաց-կամաց իրարից սառեցին։ Մայրիկը դրա համար մեղադրում էր Գևորգին։

— Դու իզուր ես քեզ հեռու պահում Վազգենից,—խորհուրդ էր տալիս մայրիկը,—նա շատ լավ ու շնորհքով տղա է։ Դու նրանից շատ բան ունես սովորելու։ Քո տարիքին է, բայց ամեն ինչ

ձեռքից գալիս է։ Բա քեզ համար ամոթ չէ՞, որ քո ընկերը այդքան բան գիտե, իսկ դու մի ապահովիչ էլ չես կարող փոխել։

— Ինչիս է պետք,— արհամարհական ձևով ձեռքը թափ էր տալիս Գևորգը,— ի՞նչ է, ես մոնտյո՞ր պիտի դառնամ։ Դա թող Վազգենն իմանա, որ խելքը ուրիշ բանից չի հասնում։

Մայրը երկար ժամանակ բացատրում էր տղային, որ նման գործեր պետք է կարողանան անել բոլոր մարդիկ, անկախ իրենց մասնագիտությունից։

— Է՜հ, մա ջան,— չկարողանալով այլևս առարկել, ծիծաղելով ասում էր Գևորգը,— ախր ես պիտի դատավոր դառնամ, ինչիս է պետք արհեստ իմանալը, թող կտանք՝ ուրիշները կանեն։ Համ էլ դու մոռանում ես, որ շուտով ամեն ինչ մեխանիզացիայի կենթարկվի և ոչ մի արհեստ պետք չի գա. չէ՞ որ մենք կոմունիզմ ենք գնում։

Մայրը ծիծաղում էր որդու միամտության վրա և բացատրում, որ կոմունիզմ չի կառուցվի, եթե բոլոր մարդիկ ձեռքերը գրպանները դնեն և ոչ մի գործ չանեն։ Հետո ասում էր, որ կոմունիզմի ժամանակ ֆիզիկական աշխատանքը չի վերանա, և շատ գործեր մարդիկ կկատարեն ձեռքի միջոցով։ Իսկ ինչ վերաբերում է կոմունիզմի ժամանակ դատավոր դառնալուն կամ փող ունենալուն, ապա դա ծիծաղելի է, որովհետև այն ժամանակ ոչ դատավոր կլինի, ոչ էլ՝ փող։

Հաճախ մոր ու տղայի խոսակցությանը խառնվում էր նաև Թևոս պապը։ Մշտական ծալիտը դեմքին՝ նա զննող հայացքով երկար ժամանակ նայում էր թոռանը և ասում.

— Ա՜յ տղա, որ բոլորդ ուզում եք դրասենյակում նստել, բա ո՞վ պիտի հողը վարի ու ցանի, ո՞վ պիտի գործարաններում ու հանքերում աշխատի։ Ախր կոմունիզմի ժամանակ պետք է լինի շատ մեծ առատություն, որ ով ինչ ուզենա՝ հագնի, ինչ ուզենա՝ ուտի, ո՞վ է լսել, որ առանց աշխատանքի առատություն լինի։

* * *

Դուռը թակեցին։ Մայրիկը դուրս եկավ միջանցք և բաց արեց դուռը։ Վազգենն էր։

— Էլի մթանն ենք մնացել, Վազգեն ջան,— նրա բարևին պատասխանելուց հետո ասաց Գևորգի մայրը և մի քանի խոսքով պատմեց, թե ինչպես եղավ, որ հանգան լույսերը։ Հետո նա սենյակից բերեց վառվող մոմը։






Մեր ֆաբրիկաները կարտադրեն այնքան գործվածքեղեն, որ եթե բոլորը միացնենք իրար, կկազմի 10 միլիոն 620 հազար կիլոմետր։ Դրանով երկրագունդը կարելի է փաթաթել 260 անգամ, կամ 28 անգամ ձգել մինչև լուսին։

(Նկարը տե՛ս 13-րդ էջում)

Վազգենը մոտեցավ էլեկտրահաշվիչին ու բարձրացավ աթոռին։ Քիչ անց, սենյակը նորից ողողվեց կաթնագույն լույսով։

— Ջա՜ն, ջա՜ն, լույսն եկավ, ջա՜ն, ջա՜ն,— ծափ տալով աղաղակեցին փոքրիկները։

Սենյակ մտան մայրիկն ու Վազգենը։ Հեռուստացույցն արդեն գործում էր, և բոլորն էլ զբաղված էին կինոնկար նայելով։ Վազգենը նստեց սեղանի ծայրին ու բանդեց թեյնիկը։

— Ներսի շիկացող լարերը



իրար են խառնվել, առաջացել է կարճ միացում և այրել ապահովիչը,— քանդելուց հետո բացատրեց Վազգենը։

— Տեսա՞ր, ես որ ասում էի,— մոր երեսին նայելով ասաց Գևորգը։

— Դու միայն ասում էիր,— չոր պատասխանեց մայրիկը,— խոսելը հեշտ է, թող անեիր, էլի։

Գևորգը վատ զգաց։ Նա կուզենար, որ մայրը առանձին թեկուզ ծեծեր իրեն, բայց ուրիշների և, հատկապես Վազգենի ներկայությամբ, այդպիսի խոսքեր չասեր։

— Թեյնիկը պատրաստ է,— քիչ հետո հնչեղ ձայնով ասաց Վազգենն ու ոտքի ելավ,— հիմա կարելի է միացնել, բարի գիշեր։

Տիկին Վարդուհին շատ խնդրեց, որ մնա, բայց նա հրաժարվեց, ասելով, որ վաղվա դասերը պիտի սովորի։

* * *

Հեռուստատեսային հաղորդումները նոր էին վերջացել, երբ տուն եկավ Գևորգի հայրը, որին բոլորը վարպետ Արտաշ էին ասում։

— Արտաշ ջան, մի բանի վրա շատ եմ զարմանում,— հյուրերի գնալուց հետո ոսկեգույն համրիչը քաշելով խոսեց Թևոս պապը։— Առաջ մի լավ սովորույթ կար. տղան անպայման սովորում էր հոր արհեստը։ Օրինակ՝ մեր տոհմը թոռե-թոռ երկաթի հետ է գործ ունեցել։ Մեր պապերը նալբանդ էին, ես ու հերս՝ դարբին, դու էլ յոթ-ութ տարի ինձ հետ դարբնություն արիր, հետո էլ խառատ դարձար։

Ախր ո՞ւմ է քաշել մեր Գևորգը, որ ոչ մի արհեստ չի սիրում։

Թևոս պապը մի փոքր լռելուց հետո, շարունակեց,

— Ես չեմ հասկանում, էսքան որ ավարտում են տասնամյակը և բոլորն էլ ուզում են համալսարան ընդունվել, ո՞նց կլինի։ Հարյուրից տասին են ընդունում, մնացածների մեծ մասը մնում է պարապ ու չի ուզում աշխատել, էլ չեմ ասում, որ բարձրագույն ավարտողներից ոմանք էլ ոչ մի տեղ չեն աշխատում։ Բա ափսոս չէ՞ էն փողը, որ պետությունը ծախսում է դրանց վրա։ Որ թողնես ժամերով ճառ կասեն, ինչ որ քամի, համա մի տախտակ մեխել չգիտեն. ցորենն ու գարին իրարից չեն ջոկում։ Օրինակ՝ մեր Գևորգը. բա մարդ էլ ութ տարի դպրոց գնա, բայց հասարակ գործ անել չիմանա՞։ Հո Վազգենը միշտ նրա հարևանը չի լինի, որ նա մութ սենյակում չմնա։ Չէ՞, ինչ ուզում ես ասա, դպրոցն էլ շատ մեղավոր է...

Թևոս պապը ոգևորված խոսում էր, իսկ վարպետ Արտաշը ուշադրությամբ լսում էր զառամյալ ծերը և համաձայնվելով նրա ասածների հետ, դրականորեն շարժում էր գլուխը։ Ինչպե՞ս առարկեր, երբ ինքն էլ Թևոս պապի ու շատերի նման այդպես էր մտածում։ Նա էլ այն կարծիքին էր, որ դպրոցը որոշ չափով կտրված է կյանքից։ Առաջ՝ երեսնական թվականներին, երբ մեր երկրում սոցիալիստական վերակառուցում էր կատարվում, անհրաժեշտ էին բարձրագույն կրթություն ունեցող մասնագետներ։ Դպրոցի առջև խնդիր էր դրված բարձրագույն հաստատությունների համար պատրաստել գրագետ մարդիկ, որոնք լավ տիրապետեն գիտության հիմունքներին։ Դպրոցն իր գլխավոր ուշադրությունը դարձնում էր դրա վրա և սովորողներին տալիս էր հանրակրթական անհրաժեշտ գիտելիքներ։ Այն ժամանակ դա հասկանալի էր։ Բայց կյանքը մի տեղում չի մնում, փոխվում է։ Իսկ մեր երկրում կյանքը առաջ է գնում յոթ մղոնանոց քայլերով։ Հիմա կյանքը ուրիշ բան է պահանջում, բայց դպրոցի ծրագրերը, դասագրքերն ու դաստիարակության մեթոդները գրեթե նույնն են մնացել։

* * *

Անցան շաբաթներ։ Մի օր երեկոյան վարպետ Արտաշը գործարանից տուն եկավ, գրպանից հանեց մի քանի տակ ծալած լրագիրը և մեկնեց Թևոս պապին։

— Կարդա, հայրիկ, ուզածդ կատարվեց,— ասաց ու գնաց լըվացվելու:

Թևոս պապը ակնոցները դըրեց աչքերին ու բաց արեց լրագիրը:

Թերթում տպագրված էր կյանքի հետ դպրոցի կապի ամրապնդման մասին ընկեր Ն. Ս. Խրուշչովի նամակը: Մի քանի տող կարդալուց հետո Թևոս պապի աչքերը հոգնեցին: Նա իր մոտ կանչեց Գևորգին և տալով լրագիրը, ասաց.

— Գևորգ ջան, աչքերս ցավում են, կարդա լսեմ: Համ էլ դպրոցի ու ձեր մասին է, քեզ էլ է պետք:

«Անհրաժեշտ է վճռականորեն վերակառուցել մեր աճող սերնդի դպրոցական դաստիարակության սիստեմը,—գրված էր նամակում:— Այս գործում ամենագլխավորն է՝ պետք է լոզունգ առաջ քաշել և այդ լոզունգը պետք է սուրբ լինի դպրոց ընդունվող բոլոր երեխաների համար, բոլոր երեխաները պետք է պատրաստվեն օգտակար աշխատանքի, մասնակցելու կոմունիստական հասարակարգի կառուցմանը»:

Թոռնիկը կարդում էր, իսկ պապը ժպտում էր քթի տակ: Գևորգը զգում էր պապի ուրախությունը, բայց չէր պատկերացնում, որ դպրոցների վերակառուցումը կարող էր այդքան հետաքրքրել և ուրախացնել պապին:

Անցան օրեր: Թերթերում հրապարակվեցին Կենտկոմի և Մինիստրների Սովետի թեզիսները դպրոցի վերակառուցման մասին և դրվեցին համաժողովրդական քննարկման: Թևոս պապը Գևորգին կարդալ տվեց գրեթե ամբողջ թեզիսները:

— Սպասի՛ր,— մեկ-մեկ նա ընդհատում էր ընթերցումը,— մի քանի տող վերևից նորից կարդա:

Գևորգը կատարում էր պապի առաջարկը և նորից էր կարդում.




Կկառուցվեն այնպիսի նոր բնակելի շենքեր, որ յոթնամյակի վերջում մեր բնակչության կեսը տեղավորված կլինի նոր բնակարաններում: Մեր ֆաբրիկաները կարտադրեն 515 միլիոն զույգ կաշվե կոշիկ:



«Միջնակարգ դպրոցի ուսումնական ծրագրերը կյանքից կտրված լինելու պատճառով շատ պատանիներ ու աղջիկներ չունեն աշխատանքային հմտություններ, չգիտեն արտադրությունը, որ լուրջ դժվարություններ է ստեղծում նրանց աշխատանքի տեղավորելու գործի համար...

Այս ամենը հրամայաբար անհրաժեշտ է դարձնում դպրոցի աշխատանքի վերակառուցումը»:



Նկ. Գր. Խանջյանի

— Բավական է։ Լսեցի՞ր, ՛հրամայաբար անհրաժեշտ է...

— Լսեցի, պապ ջան,— ծիծաղում էր Գևորգը.

— Դե շարունակիր էնտեղից, որտեղ կանգնեցիր։

Եվ Գևորգը կարդում էր. «Այսպիսով, դպրոցում գիտությունների հիմունքների ուսումնասիրման առաջատար սկզբունքը, որը որոշի դասավանդման բովանդակությունը, կազմակերպումն ու մեթոդները, պետք է դառնա ուսուցման սերտ կապը կյանքի հետ, արտադրության հետ, կոմունիստական շինարարության պրակտիկայի հետ...

Նպատակահարմար է, որ մեր բոլոր երիտասարդները, 15—16 տարեկանից սկսած ներգրավվեն հանրօգուտ աշխատանքի մեջ»։

— Այ սա բա՞ն է,— իր հիացմունքը չէր թաքցնում նաև մայրիկը։

Թեև Թևոս պապը կարդալ էր տվել ամբողջ թեզիսները, բայց Գևորգը շատ բան չէր հասկացել։ Նա միայն գիտեր, որ այսուհետև միջնակարգ կրթությունը բաժանվում է երկու էտապի։ Առաջին էտապը կլինի պարտադիր ութամյա դպրոցը, որի շրջանավարտները աշխատանքի կանցնեն ձեռնարկություններում ու կոլտնտեսություններում։

Լրիվ միջնակարգ կրթություն կտրվի ուսման երկրորդ էտապում։ Ութամյակն ավարտելուց հետո նրանք կաշխատեն արտադրության մեջ և միաժամանակ կսովորեն բաներիտ ու գյուղերիտ դպրոցներում, կամ ուսումը կշարունակեն ֆաբրիկա-գործարանային ու գյուղատնտեսական ուսուցման դպրոցների տիպի միջնակարգ պոլիտեխնիկական դպրոցներում և տեխնիկումներում։ Երկրորդ էտապի դպրոցներում ուսման տևողությունը երեք տարի է։

Այս դպրոցներից բացի պահպանվելու են երաժշտության, պարարվեստի և կերպարվեստի ասպարեզում աչքի ընկնող երեխաների համար եղած դպրոցները, որոնք տալու են միջնակարգ կրթություն։ Այդ դպրոցների շրջանավարտները ավարտելուց հետո կարող են անմիջապես ընդունվել համապատասխան բարձրագույն ուսումնական հաստատություններ։ Մնացած ինստիտուտներն ու համալսարանները առաջին հերթին պետք է ընդունեն պրակտիկ աշխատանքի փորձ ունեցող երիտասարդներ։ Իսկ շատ-շատերը բարձրագույն կրթություն կստանան արտադրության մեջ աշխատելու ժամանակ, երեկոյան և հեռակա ինստիտուտներում։

Շատ չանցած՝ Սովետական Միության Գերագույն Սովետի Սեսիան, իսկ այնուհետև մեր պարտիայի 21-րդ համագումարը հավանություն տվեցին դպրոցի վերակառուցման պլանին։

— Լավ եղավ,— իր կարծիքը հայտնեց Թևոս պապը և իր մոտ կանչելով Գևորգին, ասաց,— հիմա համոզվեցի՞ր, որ ես ու ծնողներդ ճիշտ էինք ասում, հիմա հասկացա՞ր, որ Վազգենի բռնած ճանապարհը ճիշտ է։

Պատասխանի փոխարեն Գևորգը շիկնեց ու կախեց գլուխը։

# ՓԱՌՔ ՊԱՐՏԻԱՅԻՆ

Վ. ԴԱՎԹՅԱՆ

Դու հողմերի միջով անցար՝
Ձեռքիդ դրոշն արդարության,
Դու Լենինյան «Կայծով» պայծառ
Վառեցիր այգն ազատության։
Դու դարերով տանջված մարդուն
Գարուն բերիր, լույս ու արև,
Փա՜ռք քեզ, պարտիա՝ մեր իմաստուն,
Փա՜ռք քեզ, պարտիա մեր հանճարեղ։
Դրոշի տակ քո հողմավար
Մենք դժվարին ճամփա անցանք,
Մենք ճեղքեցինք մութ ու խավար
Եվ աշխարհում հերոսացանք։
Մարտերի մեջ, աշխատանքում
Մեր բոսոր սիրտը վառեցինք
Այն ամենի համար կյանքում,
Ինչ վսեմ է ու գեղեցիկ։
Դու մեզ տվիր տենչ ու երազ,
Թևեր տվիր դու վերելքի,
Մենք քո լույսով գտանք անհաս
Ճամփաները տիեզերքի։

Ոլորտներին արեգակի
Մենք քո հզոր ուժով հասանք
Ու կփոխենք շունչով կյանքի՝
Ամեն մի տենչ ու երազանք։
Քո ամեն նոր համագումար
Մի թռիչք է հողմաշառաչ,
Որ տանում է տիտանաբար
Մեր երկիրը դեպի առաջ։
Ու փռվում է, շողում հիմա,
Լուսավորվում է մեր դիմաց
Հորիզոնը կոմունիզմի
Քո արևով շառագունած։
Դու մարդկության խիղճն ես արդար,
Միտք ու պատիվն ես մեր դարի,
Դու ապավենն ես մարդկության,
Խաղաղությունն ես աշխարհի։
Դու դարերով տանջված մարդուն
Գարուն բերիր, լույս ու արև,
Փա՜ռք քեզ, պարտիա մեր իմաստուն,
Փա՜ռք քեզ, պարտիա մեր հանճարեղ։




ՀԱՅԿԱԶ ՄՈՒՐԱԴՅԱՆ

Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

*Ծառերը հողմից հալածված խփում էին իրար. ասես հառաչում էր անտառը՝ բնության անզուսպ տարերքից։ Քամին մոլեգնում էր բացատներում, իսկ գոմաճանդում՝ ձյունափոշին սուլելով խփում էր օդաների ու գոմերի պատերին։*

*Կամոն փաթաթվել էր վերմակի մեջ ու քնել, իսկ ես երկյուղած դեռ ականջ էի դնում քամու ոռնոցին։ «Լավ էր, որ գյուղից գալիս այդպիսի բուք չէր. թե չէ ես էլ, Կամոն էլ կմնայինք ձյան տակ»։*

*— Լսու՞մ ես քամու ձենը։ Ա՛յ մարդ, բա էս բուք բորանին երեխա՞ տար կուղարկեն, թե հաց տար։ Որ ձյունն էլ եկավ, երեխաները մի շաբաթ կմնան այստեղ. դասից կընկնեն,— բողոքում էր քեռի Կամսարը, բայց հայրս հանգստացնում էր.*

*— Դժվար թե ձյուն գա, քամի է, էլ ի՞նչ ձյուն։ Դու տես վաղն արև անի, որ ճամփին չմրսեն, հետո գելուգազան քաշվեն ճանապարհից...*

*Առավոտյան զարթնեցի այն ժամանակ, երբ հայրս ուզում էր բացել օդայի դուռը։ Քամու դադարելուց հետո մեկ մետրաչափ ձյուն էր եկել։ Դիմացի՝ անտառը ծանր խոնարհվել էր ձյան ծանրության տակ։ Մեր օդան մինչև խոտածածկ տանիքը կորել էր ձյան մեջ։*

*Հայրս և քեռի Կամսարը թիեր առան և սկսեցին ճանապարհ բացել դեպի ֆերմայի ձմեռանոցը։ Անասունների կերակրելուց հետո նրանք սկսեցին մաքրել օդայի շուրջը։ Քամին բաց հար-*



Թությունից ձյունը քշել էր գոմահանդի կողմը։ Օդաներն ու գոմերը ճերմակ բուրգերի էին նմանվում։ Այդքան ձյուն մեր գյուղում երբեք չէի տեսել։

Նախաճաշի ժամանակ հայրս և քեռի Կամսարը էլի խոսում էին, թե ոնց անեն, որ մեզ գյուղ ուղարկեն։ Գյուղից եկող չկար, ճանապարհի մասին էլ ոչինչ չգիտեին։ Բայց ճանապարհը դեռ ոչինչ. հայրս լուսաբացին մոտիկ անտառից գայլերի ոռնոց էր լսել և շատ էր անհանգստանում։

Կեսօրին, երբ արևգակի շողերի տակ փայլփլում էին Զաթինդաղի ձյունազգած լեռները, հայրս կանչեց մեզ և պատվիրեց, որ շուտ գյուղ վերադառնանք։

Իսկույն ճանապարհ ընկանք։ Նոր եկած ձյունը փակել էր ճանապարհը։ Քայլելիս խրվում էինք ձյան մեջ։ Ես գնում էի առջևից, իսկ Կամոն գալիս էր իմ ոտնահետքերով։ Օրն այնպես տաքացավ, որ Կամոն սկսեց կատակել։ Երբեմն նա առաջ էր վազում, թաքնվում հաստաբուն ծառերի տակ և հանկարծակի դուրս գալիս, վայրի գազանների կամ թռչունների ձայներ էր հանում, որ ինձ վախեցնի։

Այնտեղ, ուր անտառը փոքր-ինչ նոսրանում է, և սկսվում բացատը, մի փոքրիկ ձորակ կա։ Գիշերվա քամին ամբողջ ձորակը լցրել էր ձյունով և հավասարեցրել շրջակայքի վարելահողերին։ Ես քայլում էի գլուխս կախ և ուշադիր նայում, որ հին արահետից դուրս չգամ, ճանապարհը չկորցնեմ։

Բացատը վերջանալուց հետո, երբ նորից սկսվեց անտառը, հանկարծ ետ նայեցի և ինչ տեսա. ձյան ծանրության տակ խոնարհված խոր ու մութ անտառում ես մենակ եմ։

— Կամո՛,— կանչեցի ես երկյուղած ձայնով։

Իմ ձայնից՝ հաստաբուն կաղնու տակից մի նապաստակ ցատկեց և վազեց դեպի կածանը։

— Կամո՛,— նորից ձայն տվի ես ու քարացա։ Ահավոր լռությունից սիրտս ճմլվեց։ Մի տասը քայլ ետ գնացի։

— Կամո՛։



Մոտակա ձորերը խուլ արձագանքեցին ինձ։

«Երևի Կամոն ինձ վախեցնելու համար իջել է կարճ ճանապարհով։ Վաղը դասարանում կպարծենա, թե ինձ ոնց է վախեցրել»,— մտածեցի ես, ինքս ինձ սրտապնդեցի և շարունակեցի ճանապարհս։ Սկսեցի բարձր շվշվացնել, բայց ինչքան խորանում էի անտառի մեջ, այնքան մթնում էր, և ճանապարհն ավելի ահալի դառնում։

Հանկարծ ոռնաձայներ լսեցի։

Ծառերի արանքից նայեցի ձորակի կողմը. երկու գայլ հալածում էին մի եղջերուի։ Եղնիկը թռչում էր թփերի և ընկած ծառերի վրայով, իսկ գայլերը կատաղած հետապնդում էին նրան։ Լեզուս պապանձվեց։ Ուզում էի գոռալ, բայց չէի կարողանում։ Ոտներս թուլացան ու ընկա, խրվելով ձյան մեջ։ Մի քանի րոպե հետո ես լսեցի եղնիկի աղեկտուր բառաչը։ «Բռնեցին եղնիկին, հոշոտեցին, վա՜յ ինձ»— մտածեցի ես, երբ փոքր ինչ սթափվել էի։ Իսկույն որոշեցի անելիքս. դուրս եկա ճանապարհից ու մտա գյուղ տանող կածանը, որտեղով ձմեռ ժամանակ կարող է իջնել միայն գլխից ձեռք քաշած մարդը։ Վազում էի ահաբեկված ու թափով։ Ոչ ծառ էի հարցնում, ոչ թուփ։ Տեղ-տեղ ուղղակի նստած սահում էի սառած ձյան վրայով։

## ՓԱԹԻԼՆԵՐԸ

Ի. ՖԵՏՎԱՃՅԱՆ

Քնքույշ, փափուկ փաթիլ ենք մենք՝
Աշխույժ, կայտառ, զվարթ,
Ջրի սառած կաթիլ ենք մենք,
Ուրախ իջնում ենք ցած։
Մեզանից է ցուրտը կարում
Սիրուն ու լայն վերմակ,
Ու դաշտերը միշտ զարդարում
Ծածկոցով լայն, ճերմակ։
Մենք փաթիլներ ենք պաղ ձյունի,
Ծնվել ենք մութ ամպից,
Ու իջնում ենք դաշտ ու հանդին,
Այգիներին, ճամփին։

Զիմացա ինչպես վերջացավ անտառը, ու ես դուրս եկա գյուղի վերևի բաց սարալանջը։ Վտանգըն ու երկյուղը անցել էին արդեն, այլևս վախենալու ոչինչ չկար։ Փափուկ ձյան վրա նստեցի, որ մի քիչ հանգստանամ։ Տեսա մատներիցս արյուն է հոսում. սառած ձյան բյուրեղները կտրել էին ձեռքերիս ափերը։ Փափուկ ձյունով շփեցի այրվող ճակատս ու ձեռներս, հետո մտա գյուղ տանող ճանապարհը։

Տուն հասնելուն պես՝ մայրս մաքրեց գուլպաներիս վրայից ուլունքների նման հավաքված ձյունը, փոխեց շորերս, հետո վառարանի մոտ նստած փոքրիկ քրոջս վրա բարկացավ, որ աթոռն ինձ տա։

Նստեցի վառարանի մոտ, իսկ մայրս թեյ պատրաստեց ինձ համար. անընդհատ հարց ու փորձ անելով, թե հայրս ինչպես է, սարում հո ցուրտ չէր։

Տաք վառարանի ջերմությունը երբեք ինձ այդքան հաճելի չէր թվացել։

— Մենա՞կ եկար, տղա ջան,— քաջալերող ժպիտը դեմքին հարցրեց պապիկս։

— Սարդուտ թալից էս կողմ մենակ եմ եկել։

— Ո՞նց թե, իսկ մինչև էդտեղ ո՞վ եկավ հետդ։

— Կամոն։

— Բա ո՞ւր գնաց։

— Չիմացա, նա իմ հետևից էր գալիս, մեկ էլ տեսա չկա, ինչքան ձեն տվի, չերևաց։

— Ա՜յ տղա, ո՞նց թե չերևաց։ Աղջի, մի իմացիր՝ Կամսարի երեխեն եկե՞լ է, թե չէ։ Գնա՜...

Քույրս վերադարձավ և հայտնեց, որ Կամոն դեռ չի եկել։ Կամոյի մայրը լալով եկավ մեր տուն։ Պապս հանգստացրեց՝ նրան, հետո կանչեց մեծ հորեղբորս։

— Հարութ ջան, էս երեխին վերցրու և բարձրացի սարը։ Շուտ, ժամանակ մի կորցնի։

Շտապ հագա շորերս ու դուրս եկա նրանց։ Թեև հոգնած էի, բայց գնում էի արագ։ Մեր հարևանի երկու մեծ տղաներն էլ եկան մեզ հետ։ Ճանապարհին տեսանք, թե ինչպես էին գայլերը հոշոտել եղնիկին։ Հորեղբայրս իմ ոտնահետքերից զգաց, թե ինչպես եմ խուսափել վտանգից։ Հարցրեց. և ես պատմեցի ամեն ինչ, հետո ցույց տվի այն տեղը, որտեղ տեսել էի, որ Կամոն հետս չէ։ Բացատում, ուր ձորակը լցված էր ձյան հաստ շերտով, կածանը մեկ մետրային տրամագծով փոս էր ընկել ջրհորի նման։

Սարից եկող ճանապարհից երկու մարդու ոտնահետքեր էին գալիս մինչև փոսը, իսկ նրանից հետո միմիայն իմ ոտնահետքերն էին։ Հորեղբայրս ամեն ինչ հասկացավ։ Մեր հարևանի մեծ տղան երկար պարանը կապեց մեջքին և կամաց իջավ ձյան փոսի մեջ։ Մի վայրկյանում նա մինչև ուսերը խրվեց ձյան մեջ։



— Խորն է, տակին դուրս արի,— ասաց հորեղբայրս։— Ձորակը թեք է, երեխան այստեղ մնացած չի լինի։ Ձյունափոշու հետ իջած կլինի ներքև, եկեք ներքևում ման գանք։

Նա հիսուն քայլ ներքև իջավ և ձեռքի թիակով սկսեց փորել սառած ձյունը։ Խեչոն և Տիգրանը օգնում էին նրան։ Երբ հասան գետնին, հորեղբայրս պարանի մի ծայրը տվեց Խեչոյին, մյուս ծայրը կապեց իր մեջքին և պատվիրեց, որ ուշանալու դեպքում քաշեն։ Ձյան հաստ շերտը կամրջել էր ձորակը։ Երբ հորեղբայրս մտավ ձյան մեջ, ներսի ձյունափոշին սկսեց սահել ցած։ Մի քանի րոպե հետո Խեչոն և Տիգրանը սկսեցին քաշել պարանը։

Հորեղբայրս ձեռքերով փաթաթվել էր Կամոյին։ Ինձ թվաց, թե երկուսն էլ խեղդվել են ձյունե թունելի մեջ։ Սկսեցի լաց լինել։ Խեչոն զայրացավ ինձ վրա։ Նա գրպանից հանեց իր փոքրիկ հայելին և դրեց Կամոյի բերանին, հայելին փոքր ինչ քրտնեց։

— Կենդանի է,— ուրախ բացականչեց նա և սկսեց ձյունով տրորել Կամոյի ձեռքերն ու երեսը։

Քիչ հետո Կամոն բացեց աչքերը և զարմացած նայեց շուրջը։ Խեչոն և Տիգրանը թեթևացած շունչ քաշեցին ու սկսեցին կատակել, որ Կամոն չվախենա։ Բայց նա նայեց ձյունե հսկա թունելին և ամեն ինչ հասկացավ...





Նկարիչ Պետրոս Մալայանը շ
ջերս նա խմբագրություն բերեց
կը, որտեղ միայն երեխաներ էին
Տպագրում ենք այդ նկարներից









…ռ է սիրում երեխաներին։ Վեր-
… նկարչական ալբոմներից մե-
…նկարված,
…մի քանիսը։









# Ճերմի այծյամիկը



Ս. ՕՐԲԵԼՅԱՆ

Դա շատ վաղուցվա պատմություն է։

Մի անգամ ես ու իմ ընկեր Մարտինը Թռուսուփ սարն էինք գնում։ Նրա կատարը լերկ է, ժայռոտ, իսկ փեշերը թաղված են մթին անտառների տակ։ Անտառի կենտրոնում, ծեր կաղնիների տակ պատսպարվել էր ճիմածածկ մի տնակ։ Այդ տնակում երկար տարիներ ապրում էր Հովսեփ անունով մի անտառապահ։ Դա ութսունին մոտ, հաղթանդամ, ուղիղ քայլվածքով մի ծերունի էր։

Տնակից մի քանի քայլ հեռու մեզ ընդառաջ եկավ անտառապահը։ Երբ իմացավ իրեն հյուր ենք գնում, շատ ուրախացավ։ Ծերունու հետևից քայլեցինք դեպի տնակը։ Հանկարծ պատի տակից մի կենդանի ցատկեց, առջևի ոտքերը դրեց պապի կրծքին և սկսեց լիզել նրա մաքուր դեմքը։ Մենք, կարծելով շուն է, կանգ առանք։

— Հա՛, հա՛, հա՛...— բարձր քրքջաց պապը,— մի՛ք վախենա, կծող չի։

Դա մի փոքրիկ այծյամ էր, խորունկ ու ջինջ աչքերով, ծուռ ոտքերով։ Երբ անտառապահը հեռացավ փայտ բերելու, Մարտինը փորձեց փաղաքշել այդ սիրուն կենդանուն։ Սա դես ու դեն էր փախչում, ասես զզում էր օտարի ձեռքը։

Հովսեփ պապը նա եկավ, ուսից ցած նետեց մի ահագին՝ ճյուղ և սկսեց կոտրել։ Ապա օջախը վառեց, կրակի մի կողմում դրեց չուգունե թեյամանը, իսկ մյուս կողմում մոխրի մեջ կարտոֆիլ լցրեց, որ խորովի։ Հետո նա տակը գցեց մի կենդանու մորթի և հենց որ նստեց, այծյամը խելոքն եկավ նրա կողքին մեկնվեց, գլուխը դրեց պապի ծնկանը։ Ծերունին շոյում էր այծյամի գլուխը և քաղցր զրուցում մեզ հետ։

Արդեն գիշեր էր։ Լեռներից սառը քամի էր փչում։ Լուսինը դուրս էր եկել, և նրա կաթնանման լույսը անտառն ավելի խորհրդավոր էր դարձրել։

Մարտինի միտքը զբաղված էր ինչ-որ բանով։

Նա վեր կացավ տեղից, մոտեցավ այծյամին, ձեռքի ափով մեջքը սանրելով հարցրեց.

— Ինչ լավն է, պապի, ո՞նց ես բռնել։

— Չեմ բռնել, հիմի դրա պատմությունն անեմ։ Մի օր տղաները լուր բերին, թե մի քանի գայլ են տեսել անտառում։ Նրանց ասի, որ գայլին երբ էլ սպանես՝ մեղք չի, բայց թակարդ սարքելու ժամանակը վաղուց անցել է, հիմի անտառում թակարդ դնելը հանցանք է... Բայց, ինչպես երևում է, իմ խրատը դրանք չէին լսել։

Մի քանի օր հետո, գիշերը ականջիս ձայներ հասան։ Մինչև լուսաբաց աչքս չկարողացա փակել։

Առավոտը չախմախավոր հրացանս առա ու շարժվեցի ձայնի կողմը։ Մեր Տանձուտը էն տեսակ անտառ է, որ մտնողին թվում է, թե կանաչ ծովի հատակն է ընկել... Անգամ օրը ցերեկով մութ է։ Գնացի ձայնին ականջ դնելով, շուրջս նայելով։ Քիչ հետո մացառների մեջ մի կենդանի տեսա. կլասար էր. մոտն էլ իր ձագը։ Ինձնից խրտնած, նրանք ականջները ցցած շարժվեցին։ Մեծը հետա-

ցավ, փոքրը մնաց տեղում, և ինչ-որ շղթայի զնգոց եկավ...

Է՜, բալա, ծանր բան էր էդ իմ տեսածը։ Խեղճ ճուտը թակարդի մեջ էր ընկել, և նրա ձենի վրա մայրը եկել ծիծ էր տալիս... Որ չտեսա էդ անմեղ զառանը թակարդի մեջ, կողքի ընկած, լեզուն հանած, սիրտս մղկտաց. մոտեցա, կտրված ոտներն ազատեցի երկաթի ճանկերից ու թակարդը էնպես շպրտեցի, որ տերը իր կյանքում ինչքան ման գա՝ չգտնի...

Ի՞նչ անեմ, կենդանուն ազատել եմ, բայց քայլել չի կարողանում։ Մայրը արագ մի քանի անգամ անցավ մոտովս։ Խեղճ մայր... Սիրուն աչքերը արցունքով լցված՝ էնպես է նայում, ասես ուզում է ասել. «Ի՞նչ մեղք գործեց իմ բալեն, որ էդ օրը գցեցիր»։ Է՜, բալա, նրանք էլ մեզ նման հոգի ունեն, նրանք էլ են ցավում իրենց ձագուկների համար։

Մտածում եմ՝ թե թողնեմ անտառում, չի ապրի։ Որոշեցի տանել։ Հիմի գրկել եմ, դա գլուխը քսում է երեսիս, դողդողում, կարծես խնդրում է, թե խղճա ինձ... Գիշերները նստած օջախիս կողքին, ինքս ինձ մտածում եմ՝ ոնց անեմ, որ ապրի։ Եվ ինչ արի. փոքրիկ տախտակներով կոտրածը կապեցի, ձեռս ինչքան շաքար ընկավ, գրան ավլի, սիրած խոտով կերակրեցի։ Վերքը շատ շուտ լավացավ, բայց ոտները ծուռ մնացին։

Այստեղ պապը լռեց, ձեռքը գետնին քսելով գտավ իր կեռ ծխամորճը և առանց վառելու տեղը դրեց։ Մարթինը թեժ կրակին նայելով, ասես ննջում էր։ Անտառի խոր անդորրը, լեռներից փչող հովը, խարույկի ճրճրթոցը բուի խորհրդավոր կունչը կարծես օրոր էին ասում նրան։

Պապը նորից գտավ երկար փայտը, նրանով ավելի պինդ խառնեց օջախը ու շարունակեց իր պատմությունը։

— Հա՛, էն էի ասում։ Այդ դեպքից մի քանի օր անց՝ տեսա այծյամիկս տխուր է։ Ասի՝ մի գուցե մորը կարոտում է։ Գրկեցի տարա, բաց թողեցի անտառում, իսկ՝ ես թաքնվեցի։ Վերջը, ինչ ասեմ, մայր ու զավակ իրար հանդիպեցին, մայրը հոտոտեց ձագի դունչը, պոչը, բայց երբ ձագը մոտեցավ, որ կրծքից կաթ ուտի, նա չավեց։ Երևի մարդու հոտ էր առնում...

Տեսա մայրը իր ձագին տեր չի կանգնում, էլի գրկած ետ բերի։

Հիմա էնպես է մտերմացել ինձ հետ, որ երբ առավոտները ուշ եմ վեր կենում, իր փոքր պոզերով գալիս հրում է՝ «Վերկաց»։ Էնպես է ընտելացել այս կյանքին, որ երբ ես ուշանում եմ, ման է գալիս, գտնում։ Բայց որտեղ ուզում է նստի՝ երեսն անտառի կողմն է անում, միշտ որոճալով տխուր-տրտում նայում հեռուները...



ՆԿ. Ա. ԲՈՅԱՋՅԱՆԻ



Նկ. Հ. ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆԻ

# Հ Ի Ն Գ Ը

Խ. ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

Արաիկն ամեն անգամ մի-մի հինգ էր ստանում։ Օրինակ, ընկեր Նոյեմը պատվիրել էր մի տող «Ա» գրել, գրեց։ Ընկեր Նոյեմը տետրակները հավաքեց, տարավ տուն, մյուս օրը բերեց ու բաժանեց։ Երբ Արաիկն իր տետրակը բաց արեց, տեսավ, որ հենց իր գրած տողի տակ ընկեր Նոյեմը կարմիր թանաքով «5» է գրել։ Այնքան սիրուն էր, այնքան սիրուն, որ բոլորն էլ հավանեցին, մայրիկն ու հայրիկը շատ ուրախացան, Արաիկին գովեցին։

— Ապրես, շատ լավ է։

Եվ Արաիկն ուզում էր, որքան կարելի է, շատ «5» ստանալ, որ մայրիկն ու հայրիկը շատ ուրախանան։

Մի անգամ ընկեր Նոյեմն ասաց.

— Երեխաներ, տնային տետրակում երկու հատ քառակուսի կնկարեք։

Արաիկը տուն եկավ, տետրակն ու մատիտը հանեց ու սկսեց նկարել։

Նախ նկարեց մի քառակուսի, հետո՝ մի ուրիշը։ Երբ երկուսն էլ նկարել էր, ուզում էր տետրակը փակել, հանկարծ մտածեց. «Այս երկու քառակուսիների համար ընկեր Նոյեմը մի հատ «5» կգրի, իսկ եթե մի զույգ էլ նկարեմ, մի «5» էլ կստանամ։ Ու երկու հատ քառակուսի էլ նկարեց։ Հետո էլի երկուսը, էլի երկուսը... Ամբողջ տետրակում քառակուսիներ նկարեց, իսկի դժվար էլ չէր։ Երբ տետրակի ազատ թերթերը վերջացան, հաշվեց, ինը քառակուսի էր։ Մեկն էլ տետրակի ետևը նկարեց. «Թող տասը լինի,— մտածեց նա,— տասը լինի, որ հինգ հատ «5» ստանամ, մայրիկն ու հայրիկը շատ ուրախանան»։

Բայց նա մի «5» ստացավ, իսկ ընկեր Նոյեմը տետրակները բաժանելիս՝ նրան ասաց.

— Տետրակը փչացնելու կարիք չկա, նկարիր այնքան, որքան պատվիրում եմ... Այդպիսի բաներ...

# Դ Ա Ս Ը

Զանգը հնչեց։ Ընկեր Նոյեմը եկավ, բոլորը ոտքի կանգնեցին։ Ընկեր Նոյեմը բարևեց, Հրաչիկը հուզմունքից մոռացավ պատասխանել։ Բոլորը միաբերան ասացին.

— Բարև։

Ու բոլորից հետո միայն Հրաչիկն ասաց.

— Բարև ձեզ։

Բոլորը ծիծաղեցին, իսկ Հրաչիկը քիչ մնաց ամոթից լաց լիներ։

— Նստեցե՛ք, երեխաներ,— ասաց ընկեր Նոեմը։

Նստեցին.

Հրաչիկը մտածում էր, որ հիմա ընկեր Նոյեմը իրեն դաս կհարցնի։ Նրա քույրը՝ Համլիկը, որ արդեն երեք տարի էր, ինչ դպրոց էր գնում, նրան շատ էր ասել, որ դպրոցում դաս են հարցնում, իսկ Հրաչիկն իսկի չգիտեր էլ, թե ինչ է դասը, չէ՞ որ նա այսօր առաջին անգամ էր դպրոց եկել։



Ու արի տես, որ ընկեր Նոյեմը առաջինը հենց նրա անունը կարդաց։

— Գարունյան Հրաչիկ։

Հրաչիկը լացակումած վեր կացավ ու կամաց ասաց.

— Ես դաս չգիտեմ։

— Ի՞նչ դաս,— զարմացավ ընկեր Նոյեմը։

— Դաս է՛լի, այն, որ Համլիկին հարցնում են....

— Ո՞ր Համլիկին։

— Մեր Համլիկին։

— Հա՛,— ասաց ընկեր Նոյեմը,— Համլիկի դասն ուրիշ է, իսկ դու տանավոր գիտե՞ս։

— Գիտեմ։

— Շատ լավ,— ասաց ընկեր Նոյեմը,— դե, որ դաս չգիտես, տանավոր ասա։

Հրաչիկն ուրախացավ ու սկսեց տանավոր ասել։ Երկուսն ասաց, ուզում էր մեկն էլ ասել, բայց ընկեր Նոյեմը չթողեց։

— Ապրես, բավական է, հիմա էլ Գագիկն է ասելու։

Ամբողջ օրը տանավորներ էին ասում, հետո երգեցին՝ խմբով ու առանձին-առանձին, տետրակում շրջանակներ կարեցին։ Վերջին զանգը հնչեց, բոլորը գնացին տուն։

Ճանապարհին Հրաչիկը մտածում էր. «Ա՜յ թե զարմանալի էր դպրոցում, ոչ ոք դաս չասաց»։

Տանը մայրիկին պատմեց։ Մայրիկն ասաց, որ տանավոր ասելն էլ է դաս։

Մի քանի օր հետո, Համլիկը տուն եկավ, բայց նա Հրաչիկի պես ուրախ չէր. ընդհակառակը, քիթն ու աչքերը կարմրել էին, լաց էր եղել։

— Ինչո՞ւ ես տխուր,— հարցրեց մայրիկը։

Համլիկն էլի լաց եղավ ու ասաց.

— Դասս չգիտեի, «երկու» ստացա։

— Դասդ չգիտեի՞ր,— զարմացավ Հրաչիկը,— դասդ չգիտեիր, մի տանավոր ասեիր էլի....



Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



# ՃՆՃՂՈՒԿՆ ՈՒ ՄԱՍՐԵՆԻՆ

Ս. ԳԵՎՈՐԳՅԱՆ



Գարուն էր։

Անտառի եզրին, գետակի մոտ սուր-սուր փշերով աճել էր մասրենին։ Նրա սպիտակավուն ծաղիկների շուրջը բզզում էին մեղուները։ Ուրախ էր մասրենին, որ ձըմռան երկար քնից հետո զարթնեց կրկին ու լսեց իր մոտով վազող առվակի երգը։

Գարունն անցավ, եկան ամառվա շոգ օրերը։ Միջատները սողացին դեպի մասրենին և սկսեցին ուտել նրա ծաղիկներն ու տերևները։



Տխրեց մասրենին։

Այդ պահին սարից իջավ վախեցած նապաստակը, որ մտնի անտառ։ Մասրենին տեսավ նրան և ասաց.

— Բարով եկար,
Գորշուկ շլդիկ,
Ինձ են ուտում թըրթուր, միջատ,
Թե կարող ես, արա մի ճար։

— Ի՞նչ ճար, բանջար, տե՛ս, աղվեսը ոնց է գալիս, հազիվ ես իմ գլուխն ազատեմ,— ասաց նապաստակն ու իրեն գցեց անտառ։

Դեռ նոր էր նապաստակը թաքնվել անտառում, երբ երևաց դեղնամորթ աղվեսը՝ սուր դունչը ցցած վերև։ Նա երկար պոչը փըռեց գետնին ու դիմեց մասրենուն։ —

— Է՛յ, դու, ցանցա՛ռ, որսըս չտեսա՞ր, այս կողմերն եկավ։

— Ի՞նչ էր քո որսը։

— Մի չաղլիկ շլդիկ։

— Տեսա, բայց շատ շուտ,— կեղծեց մասրենին,— հիմա շլդիկը կիսեց ան-

տառը, անցավ մեծ սարը, նրան չես հասնի։

— Թող անցնի, ոչինչ, մի ուրիշ անգամ կհանդիպեմ նրան։

— Գնո՞ւմ ես, աղվես, մի բան եմ խնդրում, օգնիր ինձ։

— Ինչո՞վ։

— Չես տեսնո՞ւմ, միջատ ու թրթուր ուտում են ինձ։ Ջարդիր դու նրանց, համ կուտես, համ էլ կազատես դու ինձ վտանգից։

— Ես միջատ ուտո՞ղ, շնորհակալ եմ, բա հավն ո՞վ ուտի, նապաստակը՝ ո՞վ, հապա լո՞րը։

— Եթե չես ուտում, եկ, գոնե թաթով ջարդիր նրանց։

— Վարձը ե՞րբ կստանամ։

— Աշնանը։

— Ծաղրո՞ւմ ես, ի՞նչ է։ Ես օրն աշխատում, օրն էլ ուտում եմ, իսկ վաղվա մասին չեմ էլ մտածում։ Ես սոված նստեմ մինչև աշո՞ւն։ Դե ես գնացի,— ասաց աղվեսը, պոչը դրեց մեջքին ու հեռացավ։

Միջատները շարունակում էին ուտել մասրենուն, բայց նրան օգնող չկար։ Մասրենին վախենում էր, որ ինքը կչորանա, էլ չի տեսնի գարնան գալը, չի լսի գետակի երգը։

Մասրենին հանկարծ լսեց ճնճղուկի ուրախ ծլվլոցը։

— Մոտ արի, ծիտիկ, իջիր իմ ճյուղին,— դիմեց նրան մասրենին։

— Տեղովդ փուշ ես, որտե՞ղ ես կանգնեմ։

— Իջիր վարդերիս։

Ճնճղուկը թրթռացրեց թևերը, իջավ վարդի վրա և տեսավ, որ անհամար միջատ ու թրթուր ուտում են մասրենուն։

— Օգնիր ինձ, հոգյակ, ես էլ քեզ նման ապրել եմ ուզում։ Ինչո՞ւ չորանամ։ Ո՞վ կտա մասուր ձմռան ցրտերին։

Ճնճղուկը խղճաց մասրենուն և սկսեց կտցահարել միջատներին ու թրթուրներին։ Շատ աշխատեց նա այդ օրը և հոգնեց։

— Վաղն էլի կգամ,— ասաց ճնճղուկն ու թռավ, կորավ երկնի կապույտում։

Մասրենին չքնեց ողջ գիշեր, սպասելով ծիտիկին։ Արևը ժպտաց։ Եկավ ճնճղուկը և սկսեց ջարդել թրթուրներին ու միջատներին։ Մի քանի օրից հետո մասրենին արդեն ազատվել էր վտանգից։ Նա նորից աճեց ու փարթամացավ։

Ձմեռը եկավ։ Դաշտերը ծածկվեցին ճյան հաստ շերտով։ Ուտելու բան չէր ճարվում, իսկ ցուրտն էլ մի կողմից էր նեղում։

Ճնճղուկն այս ու այն կողմ թռավ, բայց ոչինչ չճարեց ուտելու։ Նա հիշեց մասրենուն, գնաց նրա մոտ և ասաց.

— Ճար արա, քույրիկ, սով է աշխարհում ու ցուրտ է դաժան։

— Մի՛ վախենա, բարեկամ, ես կտամ քեզ կեր։
Տես, ինչ սիրունիկ պտուղներ ունեմ։

Ուրախացավ ճնճղուկը, իջավ մասրենուն և սկսեց կտցահարել պտուղները։

— Օ՜, ինչ համեղ են... Դու ինձ փրկեցիր,— ասաց ճնճղուկն ու շարունակեց ուտել։

— Գիտես մոռացե՞լ եմ քո լավությունը, չէ՞ որ դու ինձ փրկեցիր։

Նրանք ուրախ էին։

— Հա՛, ասաց մասրենին,— բուրդ էլ եմ ճանկել ոչխարներից, պահել քեզ համար, տար տաքուկ բույն սարքիր, սիրելիս։

Այդպես բարեկամացած, ուրախ ու երջանիկ ապրում են նրանք մեծ անտառի եզրին։



Նկ. Հ. ԳԱԼԵՆՑԻ

# Նոր խոհանոցը



Վ. ՏԱԼՅԱՆ

Պատերազմը խաղ ու պար չէ. բայց այդ թոհուբոհի մեջ էլ լինում են այնպիսի դեպքեր, որ երբ հիմա միտդ են գալիս, ծիծաղդ զսպել չես կարողանում:

Ահա, այսպիսի մի դեպք պատահեց...

Մենք մեր մարտկոցով թշնամու օդանավերի հարձակումից պաշտպանում էինք կայարանը և պահեստները։ Խոհանոցներն հրանոթներից բավականին հեռու էինք տարել, որ մեզ վերևից չտեսնեն.

Մեր մարտկոցի խոհանոցը քողարկված էր հեռու մի փոսում, մատղաշ անտառաշերտերի հետևը։

Երբ լույսը բացվելու հետ նրա ծուխն սկսում էր բարակել, իմանում էինք, որ նախաճաշը պատրաստ է։ Սովորություն կար, որ ամեն օր հրանոթի անձնակազմից մեկը կամ երկուսը գնան բոլորի կերակուրը բերելու։ Այդ էլ նրա համար էր, որ մնացածները հրանոթների մոտ լինեն ու ժամանակին դիմավորեն օդում երևացող թշնամուն։

Մի առավոտ էլ այդ «խոհանոցային պատվիրակները» ամանները ձեռքներին սպասում էին գետնափորների մոտ կանգնած, երբ փոսից լսվեց հրապուրիչ զանգի ձայնը։ Նրանք անմիջապես սլացան դեպի խոհանոց։ Բայց մի քանի քայլ վազել էին, չէին վազել, հերթապահ հետախույզը գոռաց.

— Օ՜դ...

Գոռաց ու սկսեց արագ-արա՛գ հարվածել կարն սյունից կախված ռելսի կտորին։ Դա նշանակում էր՝ թշնամին շուտով կերևա երկնքում։

— Տագնա՜պ...—լսվեց հրանոթների ժամապահների կանչը։

Մենք մի ակնթարթում գրավեցինք մեր տեղերը։ Նշանառուները նստեցին իրենց ծակոտկեն «բազմոցներին» ու հրանոթների փողերն ուղղեցին այն կողմը, որտեղից պետք է երևային հակառակորդի օդանավերը։ Նախաճաշի գնացողները կտրուկ ետ դարձան, մինչ այդ խնամքով փայլեցրած ճաշամանները գցեցին մայիսյան կանաչի մեջ ու ամեն մեկը թռավ դեպի իր հրանոթը։

Արևի կողմից, շատ բարձրում երևացին օդանավերը և սլացան դեպի կայարան։ Մենք լցրինք հրանոթներն ու մի այնպիսի համազարկ տվինք, որ գետնափորների դռնակները տեղահան եղան։ Օդանավերից մեկը ծուխ ու բոց արձակելով սկսեց թավալգլոր ընկնել, իսկ մնացածները ճանապարհները թեքեցին։

Մի համազարկ էլ տվինք, թշնամու օդանավերը թեքվեցին հակառակ կողմը ու որտեղից եկել էին, այնտեղ էլ գնացին։

—Տագնապի ավա՜րտ,—լսվեց մեր մարտկոցի ավագ լեյտենանտ Տիրոսյանի ձայնը։

Մենք իսկույն մտանք գետնափորները, Նախաճաշի գնացողները դուրս թռան, ճանապարհին արագ չանթեցին ճաշամաններն ու սրընթաց արշավեցին դեպի խոհանոց։ Բայց նրանց խոհանոց հասնելն ու «օ՜դ» տագնապալի կանչը մեկ եղավ։

Դե, մենք կայծակի արագությամբ հայտնվեցինք հրանոթների մոտ, կարծես գետնի տակից դուրս պրծանք, իսկ «պատվիրակները» ամանները թափելով հենց խոհանոցի մոտ, սուրացին դեպի մարտկոց։ Որոտացին բազմաթիվ հրանոթներ։

Այս անգամ թշնամու օդանավերի ավելի մեծ խումբը գալիս էր ծովի կողմից։ Եկան, բաժանվեցին եռյակների ու թռան հասան կայարան։ Երկինք սլացան մեր կործանիչներն ու սկսեցին կռվել նրանց դեմ։ Թշնամին նորից ետ նահանջեց։

—Ավա՜րտ,—լսվեց թեթևացնող կանչը։ Բոլորս հանգիստ շունչ քաշեցինք և շտապեցինք մտնել գետնափորները։

Նախանաշի գնացողներն այլևս չէին ուզում նույնիսկ խոհանոցի կողմը նայել, բայց նրանց մի կերպ համոզեցինք ու նորից ուղարկեցինք ուր պետք էր։

—Հիմի որ կուտե՜նք,—ծեռքերը շփելով, ասաց մոտս թեք ընկած հաղթանդամ ապարանցի Ասլանն ու նստելով, ուրախությունից գլուխը խփեց գետնափորի ցածրիկ առաստաղի հեծանին։

—Օ՜ղ,—հանկարծ հնչեց հետախույզի ձայնը։

Դժվար թե գնդակն այնքան արագ թռչեր, որքան մենք թռանք դեպի հրանոթները։ Իսկ տառապյալ պատվիրակները «տագնապ» լսելուն պես, կես ճանապարհին ցած դրեցին շիլայով լիքը ամանները ու ծտի պես հասան մեզ։

Ինչ երկարացնեմ, այդ մարտն էլ լավ վերջացրինք։

Եվ ահա մեր ընտրյալները նորից վազեցին դեպի նաշամանները, որ ցաք ու ցրիվ շարված էին խոտերի մեջ։ Նրանցից դեռ գոլորշի էր բարձրանում։

Այս անգամ տղերքն այնքան էլ եռանդով չէին վազում նաշամանների կողմը. չգիտեմ հոգնե՞լ էին, թե վստահ չէին, որ վերջիվերջո նախանաշը տեղ կհասցնեն...

—Օդ՜...—լսվեց հերթապահ հետախույզի թախծալի ձայնը։

Մենք նախանաշ բերողին մի կողմ հրեցինք ու մարզիկի նման մի ցատկումով հասանք հրանոթներին, իսկ նա էլ վազեց իր տեղը...

Արևը գլուխն արդեն թեքել էր սարի ուսին, երբ մենք վերջապես նախանաշեցինք։ Կերանք ու բոլորս անիծեցինք մեր խաղաղ կյանքը խանգարող զավթիչներին, ապա կատակով դժգոհեցինք խոհարարից, որ շիլան այդքան յուղալի էր արել։

Դրանից հետո թշնամու օդանավերը երեք օր չերևացին։

Հետո մեր հաղթանակի տոնի օրը, հեռու Գերմանիայում, երբ հիշում էինք այս դեպքը, ծիծաղից թուլանում էինք։

Մի անգամ էլ հրանոթի հրամանատարն ասաց.

—Ասլա՞ն, էն ո՞նց էր բեղերիցդ մի թիզ նարպ կախվել...

—Ու տասը հոգով ամբողջ գիշերը մաքրեցինք, մաքրեցինք՝ բան դուրս չեկավ,—ծիծաղը հազիվ զսպելով նկատեց մարտկոցի ավագը։

—Ընկեր ավագ, բա մոռացել ե՞ք, որ Ասլանի բեղերի նարպով յոթ օր հրանոթն էինք յուղում,—լուրջ ձևով ասաց նշանառու Գուրգենը։

Մեր խլացուցիչ քրքիջը թնդաց։ Ասլանը քթի տակ ժպտում էր և անուշ անում խոզի խաշլաման։

Ափսո՜ս, որ այն օրվա հերթապահ հետախույզը չկար։ Նա Բրեսլավլի մոտ վիրավորվեց ու գնաց հիվանդանոց։ Հետո իր նամակներում նա էլ էր հիշում այս դեպքը և սառը, բայց մեծ ախորժակով կերած նախանաշը։

Ճիշտ է, մենք այն օրը սառը նախանաշ կերանք, բայց մեր տված պողպատե տոլմաները ֆաշիստների բերանները վառեցին։



Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ



# Խենթ աքլորիկը



Ս. ՄԿՐՏՉՅԱՆ

Մի աքլորիկ ունեինք մենք,
Ձալպտուրիկ, կարմրակատար.
— Ծուղրուղո՜ւո՜ւ,— գիշեր-ցերեկ
Կանչում էր զիլ ու անդադար։
Հավ մայրիկը շատ խրատեց,
Աքլոր հայրը շատ նախատեց.
— Ա՜յ դու խելառ,— նրանք ասին,—
Ինչքա՞ն ասենք քեզ այդ մասին,
Որ չի սիրում մեր ողջ ցեղը
Կանչել երբեք իզուր տեղը։
Սովորույթ է դարձել հնից,
Որ արթնացնենք մարդկանց քնից
Միայն, միայն լուսաբացին,
Ելնեն գնան իրենց գործին...

Բայց բացբերան այդ աքլորը
Չէր լսում իր հորն ու մորը,
Կանչում տեղի ու անտեղի,
Խանգարում էր քունը գյուղի։
Ու մի օր էլ, երբ նա կանչեց,
Խաթուն տատը քնից զարթնեց,

Ալյուր մաղեց,
Խմոր շաղեց,
Որ հաց թխի, երբ լուսանա,
Բայց շատ անքուն սպասեց նա.
Լույսն այդ օրը
Շատ ուշ բացվեց,
Ու խմորը
Ուռեց, թթվեց։
Որքան խփեց
Թոնրակողին,
Հացը պոկվեց,
Թափվեց հողին։
Երբ բարկացավ տատը սաստիկ,
Աքլորիկին կանչեց մոտիկ,
Բռնեցինք ու դռան շեմքին
Սուր դանակը դրինք բկին...
Ու լաց եղան ամբողջ օրը
Հավ մայրիկը, հայր աքլորը.
— Վա՜յ մեր հալին,
Վա՜յ մեր օրին,
Վա՜յ քեզ նման
Խենթ աքլորին։
Չխսեիր
Անժամանակ
Չէին դնի
Բկիդ դանակ։



Նկ. Ս. ՍԱՖՅԱՆԻ

# Ով գայլին բուժի, ինքը կտուժի

ԱՐՇԱՎԻՐ ԴԱՐԲՆԻ

Նկ. Ֆ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

## ԵՐՐՈՐԴ ԳՈՐԾՈՂՈՒԹՅՈՒՆ

*Ատամնաբույժ Նապաստակի բուժարանը: Հատուկ բազմոց, դարակներ՝ գործիքներով: Պլակատներ, նկարներ և այլն: Մեծ հայելի: Նապաստակը քթի տակ երգելով մաքրում է հղկող մեքենան: Ձագերը՝ Տոտիկը և Խորոտիկը, գազար են ուտում: Հանկարծ Խորոտիկը հափշտակում է Տոտիկի բաժին գազարը և արագ ուտում: Տոտիկը ամեն կերպ ջանում է ետ խլել իր բաժին գազարը: Նապաստակը խեթ նայում է նրանց: Ձագերը լուռ ու խոնարհ շարունակում են իրենց ճաշը:*

ՆԱՊԱՍՏԱԿ. *(Երգում է):*

Ես կախարդական ատամնաբույժ եմ,
Հիվանդի համար փրկարար ուժ եմ:
Թող ամեն հիվանդ իմ դուռը ծեծի.
Հավասար կօգնեմ փոքրին ու մեծին...

*(Այդ պահին մտնում է Գրաստը: Նրա գլուխը կոլած է լաթերի մեջ: Երկար ականջները ցցվել են լաթերի տակից: Տոտիկը և Խորոտիկը զարմացած նայում են Գրաստին և ծածուկ փռթկացնում: Գրաստը տնքալով գլուխ է տալիս Նապաստակին: Հիվանդին հատուկ զգուշությամբ քանդում է ծնոտի լաթերը և զննում Նապաստակը):*

ԳՐԱՍՏ.—Երգդ լսելով քեզ մոտ վազեցի...
Տե՛ս թե ատամից ոնց նվազեցի...

*(Նապաստակը ակնոցը քաշում է քթին և ուժեղ գլուխ շարժում Գրաստին):*

ՆԱՊԱՍՏԱԿ.—Դե, քիչ տնքտնքա...

ԳՐԱՍՏ.—Ցավի մեջ ընկա:
Փուչ ատամ ունեմ: Ասա, ի՞նչ անեմ:

ՆԱՊԱՍՏԱԿ.—*(Ինքնավստահ և պարծենկոտ):*
Մեկ-երկու-երեք՝ իսկույն կհանեմ:
Դե բերանդ բաց: Հապա ասա ա՛...

*(Գրաստը գոռում է):*

Ձայնդ քեզ պահիր, իգուր մի գոռա:

*(Ստուգում է Գրաստի ատամները, գլուխն հուսահատորեն թափահարում: Ձագերը պտտվում են Գրաստի շուրջը. մեկ զարմացած զննում նրա ատամները, մեկ քաշում նրա պոչից):*

Հա՛, փուչ է իրոք, արմատն էլ՝ խոր է...
Եվ կյանքիդ համար վտանգավոր է...
Ինչո՞ւ ես պահել այսքան ժամանակ:
Այստեղ են ասել՝ հիմար ավանակ...

ԳՐԱՍՏ.—Ինչո՞ւ ես կոպտում: Ազնիվ Գրաստ եմ:

ՆԱՊԱՍՏԱԿ.—Հաշիվը մեկ է՝ գլուխդ հաստ է:
Ինչո՞ւ ուշ եկար:

ԳՐԱՍՏ.—Շատ եմ զբաղված.
Գիշեր ու ցերեկ գործի մեջ թաղված:

ՆԱՊԱՍՏԱԿ.—Տեսնում ես վատ է. վեր կաց ու ծըլկիր
Ու չարչարանքից գլուխդ փրկիր...

ԳՐԱՍՏ.—Որտեղ էլ փախչեմ, ինձ ետ կտանեն,
Մի լավ կծեծեն ու կփալանեն...

ՆԱՊԱՍՏԱԿ.—*(Մեխից կախած թոկը վերցնելով):*
Թող թոկը կապեմ քո փուչ ատամից,
Մի ակնթարթում քեզ փրկեմ ցավից...

*(Թոկը կապում է Գրաստի ատամին, երկու ծայրերը կախում: Ձագերը իրենց գործին հմուտ, իսկույն բռնում են թոկի ծայրերը):*



ԳՐԱՍՏ.—*(Քաղցր աչքով նայելով Տոտիկին ու Խորոտիկին):*
Լավ բալիկներ են, ամաչկոտ ու հեզ...
Եվ աչք ու հոնքով այնքան նման քեզ:
Ափսոս, չեմ բերել առվույտ կամ գարի...

ՆԱՊԱՍՏԱԿ.—*(Սառնությամբ ու խստությամբ):*
Քիչ խոսիր, հիվանդ: Եվ մի խանգարի:

*(Տոտիկին ու Խորոտիկին):*

Ինչքան ուժ ունեք՝ քաշեք, իմ քաջեր:

ԳՐԱՍՏ.—Բայց աղաչում եմ՝ երկար չտանջել:

*(Խորոտիկը և Տոտիկը պատրաստվում են, քաշում թոկի ծայրերը: Գրաստը տանջվում է, աջ ու ձախ ծռվում: Նապաստակի ձագերը թողնում են աշխատանքը):*

ՆԱՊԱՍՏԱԿ.—Անուշիկ բալեք, մի քիչ շունչ առեք:

*(Հերթով փաղաքշում է ձագերին)*

Մեկ-երկու-երեք, դե, քաշեք նորից...

Սկիզբը տ՛ես «Պիոներ» № 1 1959 թ.

ԳՐԱՍՏ.— Բախտս չի բանում իմ ծնված օրից...
ՆԱՊԱՍՏԱԿ.— *(Բարկացկոտ)*:

Քիչ խոսիր, իշուկ: Եվ ոչ մի շշուկ:

*(Ձագերը նոր եռանդով քաշում են թոկի ծայրերը: Գրաստը սանձվում է, ընկնում):*

ԳՐԱՍՏ.— Վա՜յ, այս ո՞ւր ընկա...
ՆԱՊԱՍՏԱԿ.— Սուս, մի տնքտնքա...
Ո՞ւր ես բղավում...
ԳՐԱՍՏ.— Վա՜յ, շատ է ցավում...

*(Նապաստակը ձեռքով նշան է անում: Ձագերը խառնում են աշխատանքը: Նապաստակը մեկական գազար է տալիս նրանց: Ձագերը ախորժակով ուտում են):*

ՆԱՊԱՍՏԱԿ.— Օ՜ֆ, քո պատճառով տանջվում ենք, Գրաստ:
Ատամիդ հիմքը և խոր է, և հաստ:
ԳՐԱՍՏ.— *(Ցավից գազազած)*:
Շուտ արեք, քաշեք...
ՏՈՏԻԿ.— Թող հանգիստ ճաշենք...
ԳՐԱՍՏ.— Բաց թողեք կորչեմ...
ՆԱՊԱՍՏԱԿ.— Ի՞նչ: Հիմար հո չե՞ս: Լսողն ի՞նչ կասի...
ԽՈՐՈՏԻԿ.— Քիչ էլ սպասիր *(շարունակում է ճաշը)*:
ՆԱՊԱՍՏԱԿ.— *(Ձեռքով նշան է անում)*:
Մե՛կ, երկո՛ւ, երե՛ք...

*(Կամաց ու զգուշորեն ներս է մտնում պոչատ Աղվեսը):*

ԱՂՎԵՍ.— Պարդոն, կներեք...

*(Բոլորը շշմած նայում են Աղվեսին: Նապաստակը մեքենայաբար կրկնում է՝ «մեկ-երկու-երեք»):*

ԳՐԱՍՏ.— *(Ցասկոտ նայելով Աղվեսին)*
Կորի՛ր, հավի գող...
ԱՂՎԵՍ.— Բարկությունդ թող...

*(Մի քանի քայլ առաջ է գնում, անփույթ ու անտարբեր կշտամբում Գրաստին):*

Կամաց գոռա, էշ, ձայնդ շատ է գեշ:

*(Մտերմաբար սեղմում է Նապաստակի գզգզված թաթը):*

Ես մի կարևոր գործով եմ եկել.
Գայլը հիվանդ է և պետք է փրկել:
ՆԱՊԱՍՏԱԿ.— *(Կակազելով)*:
Հիվանդին բը...բը...բերեք...
ԱՂՎԵՍ.— *(Նապաստակի ոճով)*. Մեկ-երկու-երեք:

*(Թեթև ու ճկուն դուրս է վազում: Քիչ հետո վերադառնում է Գայլի հետ միասին):*

ԳԱՅԼ.— *(Կույր է, քայլում է Աղվեսի օգնությամբ)*:
Ուր որ նայում եմ՝ մշուշ ու մութ է...
ՆԱՊԱՍՏԱԿ.— *(Ամեն կերպ ջանում է հաճոյանալ, քննել Գայլին)*:
Անհոգ մնացեք, իսկույն կբուժեմ:
Այ բազկաթոռը, նստեք, կաղաչեմ...
ԳԱՅԼ.— *(Մռմռալով)*:
Եթե ինձ բուժես՝ թաթդ կպաչեմ:

*(Գրաստը խիստ անհանգիստ է, ուզում է ոտքի ծլկել, բայց Աղվեսը կանգնում է նրա դիմաց: Հերթով քաշում է Գրաստի ականջները և ինչ որ փսփսում: Գրաստը ժպտում է):*

ԱՂՎԵՍ.— Հասկացա՞ր, հիմար: Դուր եկ, քաղցրացիր,
Հետո գնա դաշտ, ազատ արածիր:
ԳՐԱՍՏ.— *(Խոնարհաբար գլուխ տալով Գայլին)*:
Որքան ուրախ եմ, որ տեսա Գելին:
Ձեր մասին շատ է պատմել իմ քեռին:
Դուք շատ բարի եք, ցավող, հոգատար.
Ձեզնից միշտ գոհ են ծանոթ, թե օտար...
ԳԱՅԼ.— *(Թաթը պարզում է և փաղաքշում Գրաստին)*:
Շնորհակալ եմ, իմ հին բարեկամ:
Ո՛վ ես բարի եմ՝ գործով ցույց կտամ:
Ամեն տեղ կտան բարի անունս...

*(Ցավից տնքալով):*

Չար հովիվները քանդեցին տունս:

*(Աղվեսը ինչ-որ բան է տալիս Նապաստակի ականջին: Նապաստակը գլխով Գրաստին նշան է անում):*

ԱՂՎԵՍ.— Պետք է անհապաղ ատամը բուժել:
Դու մեծ փորձ ունես և շատ ես ուժեղ:
ԳԱՅԼ.— Բուժի՛ր, սիրելիս, ես շատ անմեղ եմ,
Վաղուց խոտով է սնվում մեր ցեղը:
ՆԱՊԱՍՏԱԿ.— Մի ակնթարթում կբուժեմ, հիմա...
ԳԱՅԼ.— Թե ինձ բժշկես, քեզ չեմ մոռանա:
Դու ազատ կապրես իմ հովանու տակ,
Փորդ կուշտ կլինի և տեղդ միշտ տաք:
Մտիր գյուղացու բոստանն ու բախչան,
Քեզ համար սարքիր քեֆ ու խրախճանք.
Ինչ սիրտդ ուզի՝ կրծիր,— արածիր,
Ու ոչ մի որսկան քեզ չի հալածի...
ԱՂՎԵՍ.— Իր տված խոսքը Գայլը չի խախտի...
ՆԱՊԱՍՏԱԿ.— *(Գոհ ու երջանիկ)*:
Ես ու ձագերս գոհ ենք մեր բախտից...

*(Նապաստակը խնամքով բուժում է Գայլի ժանիքը: Նրան օգնում է Գրաստը: Տոտիկը և Խորոտիկը մի անկյունում կուչ եկած, սարսափահար նայում են՝ մեկ Աղվեսին, մեկ՝ Գայլին: Աղվեսը շփում է թևերը և խորամանկ ժպտում):*

ՆԱՊԱՍՏԱԿ.— *(Աշխատանքով տարված՝ մոռացել է ահ ու սարսափ: Քթի տակ երգում է, երբեմն բոթելով Գրաստին)*:

Ես մի անվանի ատամնաբույժ եմ,
Բոլորի համար փրկարար ուժ եմ,
Իմ ծնված օրից բարի, քնքուշ եմ,
Մեր բարի քեռուն սիրով կբուժեմ...
ԳՐԱՍՏ.— *(Թավ ու կոպիտ ձայնով)*:
Սիրով կբուժեմ, սիրով կբուժեմ...
ԱՂՎԵՍ.— *(Երանության մեջ գտնվող՝ գլխիկորի պես չափ է տալիս, մերթ ընդ մերթ շփելով պոչի մնացուկը)*:

Ախ, ո՞ւր է պոչս, վա՜խ, ո՞ւր է պոչս...
Ի՞նչ պիտի ասեմ որդուս, կնոջս...

*(Նապաստակը գլխով զարկ է տալիս Գայլին):*

ԳԱՅԼ.—*(Շոշափելով գլուխը):*
Սա ի՞նչ է, սա:

ՆԱՊԱՍՏԱԿ.—*(Պարծենկոտ):*
Կախարդական դեղ, այս դեղից չկա
Ուրիշ ոչ մի տեղ:

*(Գայլը բռնում է գլուխը և գլուխը ցնցում):*

ԳԱՅԼ.—Դառն է, ահավոր...
ԱՂՎԵՍ.—Դիմացիր, քավոր:
ՆԱՊԱՍՏԱԿ.—Ահա քեզ մորի, բերանդ գցիր,
Իսկ մի քիչ հետո՝ գնա, արածիր...
ԳԱՅԼ.—*(Զարմացած նայում է շուրջը: Աչքերը արդեն սևանում են):*
Ի՞նչ հրաշք է սա: Տեսա՛, տեսա՛...

*(Հերթով փաղաքշում է Նապաստակին, Գրաստին: Աղվեսը ուրախությունից պարում է, ցատկում, թմբկահարում, ապա սկսում է երգել բարձր արտահայտությամբ):*

ԱՂՎԵՍ.—*(Երգում է):*

Քավորս լավացավ, լավացավ,
Ժանիքի ցավն անցավ, ցավն անցավ:
Դե գնանք Ոզնու մոտ, Ոզնու մոտ... *(Իրեն պատկերացնելով Ոզնու մոտ):*
Պոչս տուր, անամոթ, անամոթ...

*(Նապաստակը ծափ է տալիս, բռնելով Գրաստին նշան է անում, որ նա էլ ծափահարի: Ակամայից ձեռքը գնում է Նապաստակի ուսին ու երկուսով պարում են: Տոտիկը և Խորոտիկը զարմացած նայում են՝ Գայլին ու Աղվեսին: Խորոտիկը երկար ականջները թեքելով՝ լարված ականջ է դնում Աղվեսի ու Գայլի զրույցին):*

ԳԱՅԼ.—*(Աղվեսին):*
Միս եմ ուզում, սոված եմ, սոված...

ԱՂՎԵՍ.—*(Կատակով):* Ի՞նչ միս ես ուզում
Հո՞ւմ, թե՞ խորոված...

ԳԱՅԼ.—*(Աչքի պոչով նայելով պարողներին):*
Ի՞նչ ես բլբլում: Իհարկե, հում, հում...
Հում միսը լավ է, համեղ, բարավետ...

ԱՂՎԵՍ.—Հիմա կսարքեմ մի չքնաղ բանկետ...

*(Տոտիկը և Խորոտիկը կամաց փախչում են):*

ՆԱՊԱՍՏԱԿ.—*(Փաղաքշելով ձագերին):*
Ինչո՞ւ եք դողում, ի՞նչ է պատահել:
Մի՞թե չէր կարող ձեզ կարգին պահել:
ՏՈՏԻԿ.—Սոսկում ենք գայլից...
ԽՈՐՈՏԻԿ.—Աչքերի փայլից...
ՏՈՏԻԿ.—Ինչո՞ւ բուժեցիր նրա ատամը:
ՆԱՊԱՍՏԱԿ.—Գայլը մեր հյուրն է, մեր բարեկամը:
ԳԱՅԼ.—*(Երախը բացելով ցույց է տալիս ժանիքը):*
Դիտես ինչ, բժիշկ, սրիր ժանիքս...

ՆԱՊԱՍՏԱԿ.—*(Համեստությամբ):*
Զույգ աչքիս վրա: Բերեմ գործիքս...

*(Մեքենան մոտեցնում է Գայլին: Արտիստիկ շարժումներով սրում է Գայլի ժանիքը):*

ԳՐԱՍՏ.—*(Զարմացած դիմում է Գայլին):*
Բայց դու ասացիր խոտ ես արածում:

ԳԱՅԼ.—Ինձ հովիվները շատ են հալածում:
Իբր թե հոտի բաժինն եմ ուտում:
Աղվեսը վկա, որ ես չեմ ստում:
Պետք է նրանց դեմ կռվել, պայքարել:
Ուստի ժանիքս պետք է լավ սրել:
Կռվելու համար զենք է հարկավոր...
ԱՂՎԵՍ.—Իրավ ես, իրավ, սիրելի քավոր...

ՆԱՊԱՍՏԱԿ.—*(Գրաստի գլխին բամփելով):*
Մի՞թե չգիտես այսքան ժամանակ,
Ա՛յ ինչ ասել է անխելք ավանակ...

*(Շարունակում է սրել Գայլի ժանիքը):*

ԱՂՎԵՍ.—Ինչ երկար տևեց: Տանջեցիր Գայլին:
ՆԱՊԱՍՏԱԿ.—Թող մեծ ժանիքը սրի պես փայլի...
ԳՐԱՍՏ.—*(Երկյուղածությամբ շոշափելով Գայլի ժանիքը):*
Իսկապես, թուր է... Դե, հովիվն ո՞ւր է...
Թող համարձակվի մոտենալ քեռուն...
ՆԱՊԱՍՏԱԿ.—*(Մեծամտելով):*
Հովիվ ո՞րտեղից, փախել է հեռու:

*(Գայլը ահից գլուխը շարժում է մեկ Գրաստին մեկ՝ Նապաստակին, այս ծածուկ աչքով է անում Աղվեսին: Աղվեսը կռահում է Գայլի միտքը: Գլխով գաղտնի նշան է անում և մոտենում Գրաստին):*

ԱՂՎԵՍ.—*(Մտերմական տոնով):*
Դուրս գնանք, Գրաստ, մաքուր օդ ծծենք,
Բնության ծոցում քաղցր զրուցենք:

*(Գրաստը և Աղվեսը միանգամից գնում են: Նրանց հետևում է Գայլը: Նապաստակը մոտենում է բաց պատուհանին ու լարված նայում: Հանկարծ ետ է ընկրկում):*

ՆԱՊԱՍՏԱԿ.—Ինչո՞ւ է Գայլը Գրաստին հարվածում:
Ահա թե ոնց է թարմ խոտ արածում...
Վայ, խեղճ Գրաստի արյունը թափեց:
Այս ի՞նչ եմ տեսնում:
Մի՞թե ինձ խաբեց:

*(Սարսափահար ետ-ետ է քաշվում):*

Դավլիս է այստեղ: Ի՞նչ է պատահել:
Դուցե ժանիքը լավ չեմ հեսանել:

*(Վերադառնում են Գայլն ու Աղվեսը):*

ԳԱՅԼ.—Լսիր, նապաստակ, խոսենք պարզ, շիտակ.
Զէ, ինձ դուր չեկան առվույտն ու խոտը:
Այ, ուրիշ բան է ոչխարի ոտը...
Առանց թարմ մսի կյանք չունեմ բնավ...

ԱՂՎԵՍ.—*(Երազկոտ նայում է պատուհանից ու հառաչում):*

Ախ, մի չաղ աքլոր, կամ մի նախշուն հավ...

ԳԱՅԼ.—*(Նապաստակին փաղաքշելով):*

Գիտեմ, անմեղ ես, բայց... շատ համեղ ես:

ՆԱՊԱՍՏԱԿ.—*(Դժիկ կարած):*

Մի՞թե մոռացար, ես ձեզ բուժեցի:
Ձեր մեծ ժանիքը անձամբ սրեցի:

ԳԱՅԼ.—Ո՛, չեմ մոռացել: Բուժեցիր: Մերսի:
Միայն թե, գիտե՞ս, կարոտ եմ մսի:

*(Նապաստակը դողալով ետ-ետ է քաշվում: Գայլը և Աղվեսը քայլ առ քայլ հետևում են նրան):*

ԱՂՎԵՍ.—*(Բեղերը շփելով՝ կատակով երգում է):*

Արի մոտ, քո բնում տուր մի ոտ.
Տուր մի՛ ոտ...

ԳԱՅԼ.—Նախ ուտեմ ճլճիկին, հետո՝ Ավանակին...

*(Գայլը բռնում է Նապաստակին: Թարթիկը և Տատիկը հարմար պահ որսալով՝ խելակորույս փախչում են: Նապաստակը ուշակորույս փռվում է բազկաթոռին):*

Նապաստակի համ վաղուց չեմ տեսել:

ԱՂՎԵՍ.— Ես էլ...ես էլ...
Իբրև նախաճաշ՝ համեղ պատառ է...

ԳԱՅԼ.—Անհապաղ ուտեմ, քանի չի սառել...

ԱՂՎԵՍ.— Ականջ դիր, քավոր, ինձ բաժին չկա՞...

ԳԱՅԼ.—*(Կատաղած):*

Պապանձվիր. թե չէ, արևս վկա...



*(Թաքավ ապավինում է Աղվեսին: Զգույշ, գաղտնի մտնում են վարպետ Ոզնին՝ հսկայական հարթուկը ձեռքին, մայր Ոզնին մեծ մկրատով, Ասեղիկը, Քորոցիկը, Փշիկը՝ մախաթներով զինված, Եղջերուն՝ սուր եղջյուրներով: Նրանց հետևից գալիս են Տատիկը և Թարթիկը: Գայլը և Աղվեսը դեռ չեն նկատել նրանց: Վարպետ Ոզնին մոտենում է թիկունքից, հարթուկում Գայլի մեջքը: Գայլը անակնկալի եկած, ոռնում է և ուզում է փախչել, բայց քարանում է տեղում՝ տեսնելով մայր Ոզնու մեծ մկրատը: Ոզնու ձագերը մախաթներով ծակծկում են Աղվեսին: Տատիկը և Թարթիկը, ոգեշնչված ընդհանուր հաջողությամբ, վերցնում են աքցանը և սեղմում Աղվեսի պոչի մնացուկը: Աղվեսը սարսափահար դես-դեն է ընկնում, բայց փրկության ելք չկա: Գայլը եռ-եռ քայլելով ուզում է ծլկել, բայց Եղջերուն թիկունքից հարու է տալիս նրան: Գայլը ոռնում է և փռվում գետնին: Վարպետ Ոզնին, դերձակին հատուկ շարժ ու ձևով ջուր է ցանում Գայլի վրա և խնամքով հարթուկում: Գայլը ոռնում է ցավից: Փշիկը մոր ձեռքից վերցնում է մեծ մկրատը և խուզում Աղվեսի բեղերը):*

ԳԱՅԼ.—*(Հարթուկի տակ գալարվելով):*

Նորից կուրացա, ինչ օրի հասա...
Աղվես, հեյ Աղվես, ի՞նչ անեմ, ասա...

ԱՂՎԵՍ.—*(Ուժասպառ, ամենքից հալածված):*

Գլխիդ ճարը տես, անզոր եմ, քավոր:
Մի օգնող ձեռք էլ ինձ է հարկավոր...

*(Ոզնու ձագերը նրան տանում են մի անկյուն և մորթին հանում):*

Տես ինչ են անում. մորթիս են հանում...

ԱՍԵՂԻԿ.—*(Ցույց տալով Աղվեսի մորթին):*

Աղվեսը չկա...

ՓՇԻԿ.—Մուշտակ է, մուշտակ...

*(Գայլն ու Աղվեսը ընկած են անշարժ: Վարպետ Ոզնին տեսնում է, թե ինչպես Թարթիկը և Տատիկը ուշքի են բերում Նապաստակին: Արագ մոտենում է, ջուր ցանում Նապաստակի վրա):*

ՆԱՊԱՍՏԱԿ.—*(Ուշքի գալով, նայում է շուրջը, գլուխն օրորում):*

Վա՜յ հիմար, հիմար Նապաստակ,
Այս ինչ կատարվեց հարկիդ տակ...

*(Թարթիկը և Տատիկը շոյում են նրան):*

Սուտլիկ Աղվեսին ոնց հավատացի:
Եվ ո՞վ էր տեսել, որ անկուշտ Գայլը
Թարմ խոտ արածի:

*(Մանր քայլերով մտնում է Կրիան՝ հարթուկը ձեռքին: Բոլորը նայում են նրան ու ծիծաղում):*

ԿՐԻԱ.—*(Զարմացած և վիրավորված):*

Դուք ո՞ւմ վրա եք ծիծաղում այդպես,
Չէ՞ որ այս անգամ չեմ ուշացել ես:

ՆԱՊԱՍՏԱԿ.—*(Արտասվելով):*

Քիչ մնաց կորչենք տնով ու տեղով,
Մեր ամբողջ ցեղով...

ՄԱՅՐ ՈԶՆԻ.—*(Կաթիլներ տալով Նապաստակին):*

Խմիր այս դեղը, շունչդ գա տեղը:

ՎԱՐՊԵՏ ՈԶՆԻ.—*(Խրատական տոնով):*

Իմաստուն խոսք կա՝ ով գայլին բուժի,
Առաջին հերթին ինքը կտուժի:

*Ոզնիները և Եղջերուն երգում են վերջին քառյակը: Երգելով հեռանում են՝ տանելով Աղվեսի մորթին: Թարթիկը և Տատիկը ուղեկցում են նրանց: Նապաստակը – թաթերով ծեծում է գլուխը: Կրիան մոտենում է նրան, սրբում նրա արցունքները և հարթուկն առած՝ հեռանում դանդաղաքայլ: Ոզնիները և Եղջերուն, բաց պատուհանից նայում են Նապաստակին և խմբովին երգում.*

ԲՈԼՈՐԸ.—Ով գայլին բուժի, ինքը կտուժի:

*Վարագույր*

ՎԵՐՋ

## ՌԵԺԻՍՅՈՐԱԿԱՆ ՄԻ ՔԱՆԻ ԽՈՐՀՈՒՐԴ
## ԱՐՇԱՎԻՐ ԴԱՐԲՆՈՒ «ՈՎ ԳՈՂԱՑԵ՞Ց ԲՈԺԻԿԻ, Ի՞ՆՉԸ ԿՏՈՒԺԻ»
## ՄԱՆԿԱԿԱՆ ՊԻԵՍԻ ԲԵՄԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՌԹԻՎ

Ա. Դարբնու այս պիեսը շատ թատերային է, պարզ ու անմիջական, բայց պետք է խոստովանել, որ բեմադրության ժամանակ կլինեն մի շարք բարդություններ, որոնց մասին հարկ կա մտահոգվելու: Եկեք փորձենք վերլուծել մի քանի գլխավոր դերակատարների բնավորությունները:

Հայր ոզնին. ինչպես մեզ հայտնի է, ոզնին առհասարակ խիստ «ծակող» փշոտ ու համարձակ, միևնույն ժամանակ բարի սրտով կենդանի է համարվում: Ահա այսպիսին էլ նկարագրել է հեղինակը նրան, վերցնելով նրա կենդանական բնավորության պատկերացումը, դարձրել է պիեսի դրական գործող անձերից մեկը, նրան օժտելով մեծահոգությամբ, աշխատասիրությամբ, զգոնությամբ և ամենակարևորը՝ թշնամու նկատմամբ աչալրջությամբ: Նույնը հաղորդել է հեղինակը և մայր ոզնուն, միայն տվել է նրան ավելի քնքշություն և բնավորության ավելի մեղմ գծեր: Նրանց ձագուկները դաստիարակված են նույն ոգով, բայց նրանք ավելի աշխույժ և կենսախինդ են:

Հեղինակը հաճելի հումորով պատկերել է կրիայի «կերպարը»: Կրիան, ինչպես մեզ հայտնի է, դանդաղկոտ է և կարծես թե միքիչ էլ ծույլ, բայց միևնույն ժամանակ չափազանց բարի ու խելացի է, տեղն ընկած ժամանակ դառնում է խիզախ, համարձակ: Նա ինքը շատ լավ զգում է, որ բնությունը զրկել է նրան արագաշարժ և աշխույժ լինելուց, դրա համար էլ միշտ աշխատում է հաղթահարել և վերափոխել իրեն:

Աղվեսը մեզ ծանոթ է, իր խորամանկությամբ և երկերեսանիությամբ: Հեղինակը ընդունելով նրա հանրահայտ բնավորությունը, շատ գունեղ է պատկերել այդ կեղծավոր, նենգ և խաբեբա կենդանուն, որը միանալով չար, գիշատիչ, թթամիտ գայլին փորձում է խաբելու, ստելու միջոցով հասնել իր խարդախ նպատակներին:

Գայլի դերը սկզբում, երբ նա վիրավորված է և կուրացած, պետք է խաղալ խեղճ, ստորացած, բայց երբ բուժվում է, միանգամից դառնում է անշնորհակալ մի գազան, գիշատիչ և վագրենի, գոռոզ ու թթամիտ մի վայրենի, որը ամեն ինչի ընդունակ է:

Աղվեսին և գայլին հակադրված է ոչ հեռատես, միամիտ, վախկոտ, բայց և պարծենկոտ նապաստակը: Իր ոչ հեռատեսության և դյուրահավատության պատճառով նա ընկնում է դժբախտության մեջ և հազիվ է ազատվում կործանումից:

Բեմադրողը և դերակատարները չպետք է տարվեն կենդանիների արտաքին մանրակրկիտ նմանությամբ: Այստեղ միայն հարկավոր է, որ նրանք արտաքին ձևավորման մեջ գտնեն յուրաքանչյուրի բնորոշ մի քանի գծեր: Նույնը և խաղարկության մեջ չպետք է տարվել կենդանիների իրենց շարժուձևերով, նրանց նմանվելու, խոսելու եղանակով, պետք է այստեղ նույնպես գտնել ընդհանուր մի քանի գծեր և ձևեր, որոնք միմիայն կհիշեցնեն այդ կենդանիներին: Ավելի շատ պետք է ուշադրություն դարձնի նրանց բնավորությունների և փոխհարաբերությունների վրա: Պիեսում ճիշտ է, կենդանիներ են գործում, բայց նրանք շատ խիստ պայմանական են: Պայմանական են հենց նրանով, որ խոսում են, երգում և օժտված են մարդկային շատ գծերով:

### ՄԻ ՔԱՆԻ ԽՈՍՔ ՆԿԱՐՉԱԿԱՆ ՁԵՎԱՎՈՐՄԱՆ ԵՎ ԵՐԱԺՇՏՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Ինչպես նշվեց վերևում, պետք է խուսափել ճշգրիտ կենդանիներին նմանվելու ցանկությունից, ուրեմն դրա հետ մեկտեղ պետք է գտնել կարևոր և բնորոշ մանրուքներ, որոնք հիշեցնեն այս կամ այն կենդանուն: Մեր կարծիքով, նպատակահարմար կլինի, որ բոլոր կենդանիներն էլ ունենան կիսադիմակներ, այսինքն մինչև բերանը, որպեսզի խոսքը մաքուր հնչի: Բացի այդ, պետք է պատրաստել յուրաքանչյուրի համար ամեն կենդանուն հարմար գունավոր զգեստներ: Օրինակ, եթե ոզնի է, մեջքին փշերով սարքված զգեստ, կրիային՝ պատյան հիշեցնող զգեստ, գայլին՝ գորշ զգեստ ու պոչ, և այլն:

Եթե ընդունում ենք, որ մեր պիեսը խիստ պայմանական է, ապա բեմական ձևավորումը նույնպես պետք է պայմանական լինի: Օրինակ, առաջին գործողության մութ քարանձավը ստանալու համար հարկավոր է կտավի վրա նկարել ժայռի բեկորներ և մեջտեղը կտրել քարանձավի ձևի ու կախել առաջին պլանի վրա, իսկ հետևը մի երկու մետր հեռավորության վրա կախել մուգ գույնի վարագույր: Լուսավորել այնպես, որ միմիայն դերակատարները երևան, խուսափելով լուսավորել դեկորացիան: Այդ դեպքում կստացվի քարանձավի լրիվ պատկերացում:

2-րդ գործողության համար անհրաժեշտ է նկարել մեծ ծառի փչակ, կտրել այն և նրա ետևից կախել առաջին պատկերի վարագույրը, միայն թե այստեղ հարկավոր է լուսավորել պայծառ գույներով, ստեղծել վառ և հաճելի տրամադրություն:

3-րդ գործողությունը պետք է անել կանաչ անտառի ֆոնի վրա, որ նույնպես կարելի է նկարել և բեմի առաջամասում դնել հեղինակի կողմից նկարագրված իրերը և դետալները

Այս պիեսը բեմադրելու համար մեծ նշանակություն ունի երաժշտությունը: Հեղինակի կողմից գրված երգերը պետք է երաժշտության վերածել, դա կարելի է հանձնարարել ձեզ ծանոթ մեղեդիներից որևէ մեկին: Այստեղ պետք է դիմել ձեր դպրոցի երգի դասատուների օգնությանը:

Հ. ՂԱՓԼԱՆՅԱՆ

Ռեսպուբլիկայի վաստակավոր արտիստ, ռեժիսյոր



Ինչո՞ւ ենք

այսպես ասում

## «ՌՈՒԲԻԿՈՆԸ ԱՆՑՆԵԼ»

Հռոմի ծերակույտը Հուլիոս Կեսարին ուղարկել էր Գալիա՝ այնտեղի ցեղերին Հռոմի իշխանությանը ենթարկելու համար: Կեսարի արշավանքը երկար տևեց: Նա մեծ հաղթանակներ տարավ և Հռոմի ծանր լուծը տարածեց գալիական ու գերմանական ցեղերի վրա:

Հուլիոս Կեսարն իր գրաված երկրներից հափշտակած ավարով փայլեց Հռոմի ժողովրդին, որն սկսեց փառաբանել նրան:

Հռոմի ծերակույտն ու կառավարիչ Պոմպեոսը վախենալով Հուլիոս Կեսարի վայելած մեծ ժողովրդականությունից, որոշեցին նրան կանչել, պաշտոնազուրկ անել և տեղը ուրիշ մարդ ուղարկել:

Երբ Հուլիոս Կեսարին հանձնեցին ծերակույտի հրավերը, նա գտնվում էր Ռուբիկոն գետի մոտերքում:

Ծերակույտի նամակը դուր չեկավ Կեսարին, որովհետև կասկածելի ու քողարկված բան էր տեսնում նրանում: Նա զգաց իրեն սպառնացող վտանգը և գլխի ընկավ, որ այդ դավադրության հեղինակը Պոմպեոսն է: Կեսարին ծանոթ էր Պոմպեոսի թունավոր նախանձը իր դեմ, գիտեր նաև, որ ծերակույտը ստրկամտորեն ենթարկվում է նրա կամքին: Ի՞նչ աներ, եթե առանձին գնար՝ կորած էր, իսկ եթե գնար իր հզոր բանակով, արնահեղություն կլիներ: Դժվար էր այս ճակատագրական խնդիրը լուծել, բայց Հուլիոս Կեսարը, առանց տատանվելու, իր բանակին հրամայեց Ռուբիկոնն անցնել և արշավել Հռոմի վրա: Ռուբիկոնը հռոմեական կայսրության հյուսիսային սահմանագլուխն էր:

Մոտավորապես երկու հազար տարի է անցել այդ օրվանից, բայց մարդիկ, երբ գտնվում են մի դժվարին հարցի առաջ, միշտ հիշում են այդ դեպքը:





## ՄԻԵՎՆՈՒՅՆ ՋՈԿԱՏՈՒՄ

Ինչքա՜ն ուրախություն կա այս նկարներից ձեզ նայող աչքերում: Սրանք միևնույն թաղի, միևնույն գյուղի կամ քաղաքի երեխաներ չեն: Նրանք եկել են մեր Հայրենիքի զանազան վայրերից և պատկանում են տարբեր ազգությունների:

Ահա Էլֆրիդա Մանուսյանը՝ շրջապատված իր ընկերներով:

Նա նորից պատմում է մի հետաքրքիր պատմություն:

— Հետո, հետո ի՞նչ եղավ,— հաճախ անհամբերությամբ ընդհատում են ընկերները: Եվ Էլֆրիդան ոգևորված պատմում է այն ամենի մասին, ինչ մի քանի տարի առաջ տեսել է Ալթայում:

Քաջարանի Ստեփան Շահումյանի անվան միջնակարգ դպրոցում բոլորը ճանաչում են 8-րդ դասարանի աշակերտուհի Էլֆրիդա Մանուսյանին: Նա ոչ միայն լավ սովորող է, այլև ակտիվ պիոներ աշխատող, օրինակելի կոմերիտուհի, որն ամեն կերպ օգնում է ետ մնացողներին, կազմակերպում է հետաքրքիր զրույցներ: Ահա թե ինչու դպրոցում փոքրից մինչև մեծը սիրում ու հարգում են նրան: Էլֆրիդան էլ գոհ է իր ջոկատի անդամներից:

Եվ իրոք, ինչպե՞ս չուրախանա Էլֆրիդան, ունենալով այդպիսի բազմազգ ու համերաշխ մի ջոկատ: Այդ ջոկատում հայի հետ կողք-կողքի ապրում և միևնույն դասարանում սովորում են ուկրաինուհի Ալլա Սիդորենկոն, ռուս Անատոլի Իսակովը, ադրբեջանուհի Զեբիդա Բունիաթովան, ղազախուհի Լուսյա Ջաիբաևան, տաջիկուհի Ֆաթիմա Աստանովան, բելոռուս Գեննադի Բլագովը, մոլդավացի Վասյա Կոնֆեդրատը, Կոմի ավտոնոմ մարզից եկած Վասյա Լոգինովը, լեհ Գենա Պշեկոտսկին, հրեա Սաշա Բուդինսկին և ասորուհի Լենորա Գավրիլովան:

Նրանք միշտ իրար հետ են և միշտ օգնում են իրար: Նրանց բարեկամական սերտ կապը օրեցօր ավելի է ամրապնդվում:

— Ես սկզբում շատ էի ամաչում,— ասում է ընկերական զրույցում Անատոլի Իսակովը,— երբ դեռ նոր էի եկել Ստալինգրադից: Բայց այս նոր ու հարազատ շրջապատին շատ շուտ ընտելացա ու հիմա ինձ շատ լավ եմ զգում:

— Մի ժամանակ,— ոգևորված խոսում է Ֆաթիման,— հեռվից լսելով հայերի մասին՝ չէի պատկերացնում, որ նրանք այսքան սիրալիր են, հոգատար: Շատ ուրախ եմ, որ ապրում եմ Հայաստանում:

Իրենց բազմազգ կոլեկտիվի մասին նույնպիսի սիրով են խոսում նաև մյուս պիոներները:

Ինչքա՜ն շնորհալի պատանիներ են նրանք... Բավական է մըտադրվեն կազմակերպել մի որևէ ցերեկույթ կամ երեկույթ, և չանցած մի քանի օր՝ նրանք արդեն բեմի վրա են: Ուկրաինուհու պարը, ղազախուհու ժողովրդական երգը, հայի «Քոչարին», ռուսի կատակերգը, ադրբեջանցու «Ջյուջըլերիմը», բելոռուսի արտասանությունն ու մյուսների ոգևորված ելույթները ջերմ ընդունելության են արժանանում ունկնդիրների կողմից: Նրանք աչքի են ընկնում նաև ուսման առաջադիմությամբ և բարձր կարգապահությամբ:

Ահա թե ինչու դեմքերից չի պակասում նրանց կենսավառ ժպիտը:

*Տեքստը և լուսանկարը՝ ԽԱՉԱՏՈՒՐ ԶՈՐԵՓՉՅԱՆԻ*

# ՎԵՃ ԼՈՒՍՆԻ ՇՈՒՐՋԸ

*ԱՇՈՏ ՇԱՅԲՈՆ*

Մանուկները երեկոյան
Իրենց բակը խաղի ելան,
Մեկ էլ՝ երկնին երբ նայեցին,
Կեռ մանգաղիկ նկատեցին:
— Տղե՛ք,— գոչեց Նահապետը,
Նրանց բակի աստղագետը,—
Տեսե՛ք, լուսինը նիհարել,
Փակագծի պես է դառել:
Սրան կասեն վերջին պահիկ,
Լուսնի ավարտ, Լուսնի մահիկ:
— Իսկի էլ չէ, դա մահիկ չէ,
Նո՛րն է նորել,— վիճեց Վաչեն,—
Դու կտեսնես, ա՛յ, հենց վաղը
Կլայնանա կեռ մանգաղը,
Տասնհինգ օրը երբ լրանա,
Կլոր Լուսին պիտի դառնա:
Վեճը գնաց ու թնդացավ,
Մի ընդհանուր աղմուկ դարձավ.
— Չե՛, չի մարի, նո՛րն է նորում,
— Չէ՛, չի նորում, հի՛նն է մարում:
— Նո՛րն է նորում, նո՛րն է, նո՛րը...
— Հի՛նն է մարում, ի՞նչն է նորը...
Այս աղմուկին բակը ելան
Է՛լ հարազատ, էլ հարևան,
Ամեն մեկը մի բան ասավ,
Հերթը Զաքար քեռուն հասավ:
— Ուշադրությո՜ւն, բարեկամներ,
Իմ սիրելի հարևաններ,
Լուսնի փուլը երբ դիտում են
Մարդիկ հաճախ շփոթում են:
Նայեք նրա մանգաղիկին:
Աղեղնակերպ իր կողիկին.
Երբ ուռուցքով նայում է ա՛ջ,
Նո՛ր Լուսին է՛ իմացեք քա՛ջ.
Իսկ երբ կողը ձախ է դարձած,
Հի՛ն Լուսինն է՝ պրծավ գնաց.



Ինչո՞ւ ենք

այսպես ասում

## ԳՈՐԴՅԱՆ ՀԱՆԳՈՒՅՑ

Գորդիումը փռյուգիական մի հին քաղաք էր, որն այժմ չկա: Նա գտնըվում էր Փոքր Ասիայում, Սաքարի գետի մոտ: Ըստ ավանդության, այս քաղաքը հիմնադրել է Գորդիոս անունով մի գյուղացի, որը պատահմամբ դարձել էր թագավոր:

Զևս աստվածը իր քուրմերի միջոցով հրամայել էր փռյուգացիներին իրենց համար թագավոր ընտրել այն մարդուն, որը սայլով առաջինը կմտնի աստծո տաճարը:

Առաջինը Գորդիոսն է մտնում և փռյուգացիները նրան հռչակում են թագավոր: Գորդիոսը իր սայլը նվիրում է Զևսի տաճարին: Սայլի լուծը [illegible] կապված էր այնպիսի ճարտարությամբ, որ հանգույցի երկու ծայրերը չէին երևում, և քանդելը անհնարին էր:

Հնագույն ավանդությունն ասում էր, թե ով որ քանդի այդ խորհրդավոր հանգույցը, նա կդառնա աշխարհակալ և ամբողջ Ասիայի տերը:

Շատ իշխաններ ու թագավորներ փորձեցին քանդել, բայց իզուր:

Երբ Ալեքսանդր Մակեդոնացին գրավեց Գորդիում քաղաքը, նա էլ փորձեց քանդել խորհրդավոր «Գորդյան հանգույցը», բայց չկարողացավ:

Բարկացած երիտասարդ զորավարը հանեց իր թուրը և մի հարվածով կտրեց հանգույցը:

Այստեղից էլ առաջացավ «Գորդյան հանգույց» արտահայտությունը, որ անլուծելի խնդրի իմաստով գործածվում է մինչև այսօր:

Վ. ԳԱԼՍՏՅԱՆ



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկը՝*
*Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ*

# Ժամանց

I
ԿԱՄՈ
ԱՐԴԱ
ՍՈՒՐԵՆ
ՀԱՅԿ
ՎԱՐԴԱՆ
ԱՆԱՀԻՏ

II
ԳԵՈՐԳ
ՎԱՀԵ
ՍԱՀԱԿ
ԼԵՎՈՆ
ՇՈՒՇԱՆ
ԽՈՐԵՆ

III
ԳՈՌ
ՆԱԶԻԿ
ՄԱՆԻԿ
ԳՈՀԱՐ
ԼԵՆԱ
ՎԱՀԱՆ

IV
ԽԱՉԻԿ
ԳԱՅԱՆԵ
ԳԵՂԱՄ
ՎՐՈՒՅՐ
ԱՐՍԵՆ
ՍԵԴԱ

V
ԱՇՈՏ
ՄՀԵՐ
ՍԵԹ
ՍՈՍ
ՍԻՄԱ
ԱՆՈՒՇ

VI
ԱՐՓԻԿ
ՀԵՂՈՒՇ
ԼՈՒՍԻԿ
ՄԱՆՈՒՇ
ՆՎԱՐԴ
ՎԱՆԻԿ

## ԳՏՆԵԼ ԱՆՈՒՆՆԵՐԸ

Սովետական Բանակի տարեդարձի առթիվ դպրոցում երեկույթ էր կազմակերպված: Դահլիճն էին հավաքվել բարձր դասարանների գրեթե բոլոր աշակերտները: Հյուրեր էին եկել շեֆ զորամասից և հարևան դպրոցից: Երգիպարի ինքնագործ խմբի ելույթից հետո ավագ ջոկատավարը հայտարարեց.

— Այժմ ֆոկուսներով հանդես կգան հանրահռչակ Երկար Մակարն ու Պստիկ Խոստիկը:

Բոլորը ծափահարեցին: Խոստիկն ու Մակարը բեմ բարձրացան:

— Դահլիճում շատ անծանոթ հյուրեր կան,—սկսեց Մակարը,—բայց ես ու Խոստիկը երկու հարց տալով կարող ենք իմանալ ցանկացած մարդու անունը:

Բացվեց վարագույրը, և բեմի վրա երևաց փայտե ձողերի վրա ամրացված մի մեծ շրջանաձև ֆաներա, որի վրա վեց շարք անուն կար գրված:

Բոլորը զարմացած միմյանց նայեցին, կարծես ուզում էին ասել, թե այդ ցուցակի միջոցով նրանք ինչպես պետք է իմանան անծանոթ մարդկանց անունները:

Մինչ Խոստիկը զբաղված էր բեմի խորքում դրված փոքրիկ սեղանի վրայի փոքրիկ տուփերն ու սրվակները դասավորելով, Մակարը մոտեցավ առջևի շարքում նստած մի անծանոթ աղջկա և ասաց.


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝** ԱՍԱՏՐՅԱՆ Օ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գլխավոր խմբագրի տեղակալ), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՖՅԱՆ Պ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.:

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06:

ՎՖ 00969. Պատվեր 45 Տպաքանակ 7000: Տպագրական 5 մամուլ: Ստորագրված է տպագրության 7/II 1959 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91:
Գինը 2 ռ.

— Խնդրեմ ասացեք, թե որ շարքում է գրված ձեր անունը,— ցույց տվեց շրջանաձև ֆաներան:

— Վեցերորդ,— պատասխանեց աղջիկը:

— Լավ,— ասաց Մակարը և շուռ տալով ֆաներայի մյուս երեսը, որի վրա նույնպես վեց շարք անուն էր գրված, նորից հարցրեց,— իսկ այստե՞ղ:

— Երկրորդ:

— Ձեր անունը Նվարդ է, ճիշտ է, չէ՞:

— Ճիշտ է,— փոքր ինչ շփոթվեց աղջիկը:

Մակարը նորից շուռ տվեց ֆաներան և սկսեց հարցնել մյուսներին: Այսպես նա իմացավ բոլորի անունները:




Պստիկ Խոստիկի և Երկար Մակարի այս ֆոկուսը մեծ աշխուժություն առաջացրեց: Հետո նրանք ուրիշ ֆոկուսներ էլ ցույց տվին, որոնք նույնպես շատ հետաքրքիր էին: Երբ երեկույթը վերջացավ շատերը շրջապատեցին Խոստիկին ու Մակարին և խնդրեցին հայտնել անուններն իմանալու ֆոկուսի գաղտնիքը: Եվ նրանք բացատրեցին.

Իմանալով, թե հակառակ երեսի որ շարքում է գտնվում անունը, պետք է այդ շարքի կենտրոնից հաշվեք այնքան շրջանակ, որ համապատասխանի առաջին անգամ ասված շարքին: Այդ շրջանում գրվածը կլինի նրա անունը: Օրինակ, եթե մեկը իր անունը գտել է երեսի կողմի երրորդ և հակառակ կողմի չորրորդ շարքերում, ուրեմն նրա անունը Գոհար է, որովհետև այդ անունն է գրված հակառակ երեսի չորրորդ շարքի՝ կենտրոնից հաշված երրորդ շրջանում:

Երեխաներ, այսպիսի ֆոկուս կարող եք փորձել ինքներդ, դժվար չէ:

# Պատասխանում ենք

«Պիոներ» №1

*ԵՐԿԱՐ ՄԱԿԱՐԻ «ԿԱՅԱԶՈՐԸ»— Առաջին գրոհից հետո Մակարը ուժերը դասավորել էր հետևյալ կերպ.*

2 7 2
7   7
2 7 2

*Երկրորդ գրոհից հետո*

3 5 3
5   5
3 5 3

*Երրորդ գրոհից հետո*

4 3 4
3   3
4 3 4

*Չորրորդ գրոհից հետո*

5 1 5
1   1
5 1 5

*Հինգերորդ գրոհից հետո «Կայազորում» մնաց 22 «զինվոր»: Այս անգամ Երկար Մակարը «զինվորներին» կանգնեցրեց միայն անկյուններում:*

5 – 6
–   –
6 – 5

*ԿԱՐՄԻՐ ԳՈՒՅՆԸ — Կարմիր լույսը ավելի հեռվից է երևում: Ինչքան մեքենավարը շուտ իմանա ճանապարհի փակ լինելը, այնքան շուտ կկանգնեցնի գնացքը:*

*ԿԱՐՈՂ ԵՍ ԿԱՐԴԱԼ — 1. Աշուն, 2. «Անուշ», 3. Զոյա, 4. վրան, 5. Օհան, 6. Լոգո, 7. Ավագ, 8. Կոլա, 9. Ուրան, 10. անագ, 11. մորի, 12. Օրշա, 13. ատամ, 14. Վանո, 15. «Կրակ», 16. «Անի-դադ»:*

*Ճիշտ լուծելուց հետո կկարդացվի՝ «Շնորհավոր Նոր տարի»:*

*ՀԵՔԻԱԹ ԽՆԴԻՐ — Նապաստակի մոտ կար յոթ գազար. չորսը տվեց արջին, երկուսը՝ աղվեսին, իսկ մեկը թողեց իրեն:*

